1916 № 34.—Օգոստոսի 21 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.,** Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութիւնների համար՝ **տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։** Արտասահման՝ **տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.**

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտատաքաղեան հրապար. № 7.

**Հեռախոս № 29.**

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ԴՈԿՏՈՐ ՎԻԼԻԱՄ ՀԱՐՏՎԻԼ ԿՐԻՍՍԻ

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում այս շաբաթ կռիւները շարունակւում էին բաւական եռանդուն կերպով միջին և հարաւային գծերի վրայ։ Քղու շրջանում ռուսները մի ուշագրաւ յաղթանակ են տարել Օգնուտի բարձրութիւնների վրայ՝ գերելով մօտ 350 ասկեար և 7 սպայ։ Բաղէշից հիւսիս ևս ռուսները յաջողութիւն են ունեցել. յետ են մղել թիւրքերին մինչև Բաղէշի կիրճը և ներկայումս գտնւում են այդ քաղաքից ընդամենը մի քանի վերստ հեռու։ Այստեղ էլ թշնամին բաւական ջարդ է կերել՝ մօտ 200 ասկեար և 11 սպայ գերի տալով ռուսներին։ Բացի այս երկու խոշոր կռիւներից՝ բազմաթիւ մանր ընդհարումներ են տեղի ունեցել ռուսների և թիւրքերի միջև Քղուց մինչև Վանայ լիճը։ Թշնամին վերջապահ կռիւներով կամաց կամաց նահանջում է դէպի իր նախկին դիրքերը։

Տիգրանակերտի գծի վրայ ռուսների առաջխաղացութիւնը դէպի Արածանի շարունակւում է յաջող կերպով։ Եթէ նոր անակնկալներ չպատահեն և սպասուող օգնական զօրքերը ժամանակին վրայ հասնեն, նրանք մինչև ձմեռնամուտը կկտրեն Տաւրոսի լեռնաշղթան և կիջնեն Դիարբէքիր-Համիդի դաշտը։

Պարսկական ճակատում թիւրքերի առաջխաղացութիւնը Բաղդադ-Քիրմանշահ-Համադան ուղղութեամբ շարունակւում է։ Թշնամին երկու թեւով՝ մէկը Ղումի գծով, իսկ միւսը

Ղազուինի՝ շարժւում է դէպի Թեհրան։ Մայրաքաղաքում անգլո-ռուսական շրջանում խուճապ (պանիկա) է տիրում։

բացի դեսպանութիւններից—և հայ ժողովուրդը թողել են Թեհրանը և քաշուել դէպի Ռաշտ։

## ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Անցեալ շաբաթ բուլղարացիք իրենց զինակիցների հետ աշխատում էին Սալոնիկի ճակատը երկու թևերից՝ Ֆլորինայի և Օրժանոյի շրջաններից պարփակել և Վարդարի ափերը բռնած ֆրանսական գլխաւոր ուժերի թիկունքը դուրս գալ։ Այս շաբաթ դաշնակիցները յաջողեցին կանգնեցնել թշնամու առաջխաղացութիւնը թևերի վրայ։ Սերբերը ձախ թևում, Դանիցա—Օստրովո գծի վրայ ամրանալով՝ ոչ միայն յետ են մղում թշնամու բոլոր յարձակումները, այլև մի քանի հակայական յարձակումներով ստիպում են թշնամուն փոքր ինչ յետ քաշուել։ Անգլիացիք ևս աջ թևի իրենց բոլոր դիրքերը այս շաբաթ պահպանել են։ Վարդարի գծի վրայ թշնամին միայն ցուցական գործողութիւններ է կատարում՝ թևերում սկսած գործը դիւրացնելու համար։

Սալոնիկի ճակատում դաշնակիցների ուժը մեծացել է իտալական և ռուսական թարմ զօրքերով։ Միւս կողմից Ռումինիայի հանդէս գալը Դանուբի ափերին պէտք է ստիպի Բուլղարիային՝ Սալոնիկի ճակատից զօրքեր քաշել դէպի իր հիւսիսային սահմանները։ Այս նոր հանգամանքներն ամենայն հաւանականութեամբ մօտիկ ապագայում բոլորովին այլ ընթացք են տալու Բալքանեան պատերազմական գործողութիւններին։

## ԱՒՍՏՐՈ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում խաղաղութիւն է տիրում։ Թշնամու մի քանի յարձակումները Դանուբից հարաւ, Սերետի և Բիստրիցայի շրջանում յաջողութեամբ յետ են մղուած։ Կարպատներում ռուսները դանդաղօրէն շարժւում են դէպի Հունգարիայի սահմանները, որոնցից նրանք ընդամենը 25—30 վերստ են հեռու։ Մնացած գծերի վրայ տեղի են ունենում սովորական թնդանօթամարտ և սաւառնակային հետախուզումներ։

Անգլօ-ֆրանսական ճակատում ֆրանսացիք փոքր ինչ առաջ են գնացել Սոմի և Վերդէնի մօտ։ Առաջին գծի վրայ նրանք գրաւել են Մորեպ խիստ ամրացրած գիւղը՝ գերելով 600 գերմանացի, իսկ երկրորդ գծի վրայ՝ Տիէմոն Ֆլէրիի մի քանի ամրութիւնները՝ գերելով 300 հոգի։ Անգլիացիք ևս իրենց ռազմագծերի վրայ մի շարք տեղական նշանակութիւն ունեցող կռիւներ են ունեցել՝ գերելով մօտ 1,000 մարդ։

Իտալական ճակատում թշնամին այս շաբաթ որոշ կենդանութիւն էր ցոյց տալիս Տրենտինոյի գծի վրայ և Աստրիկո ու Պոզինո գետերի հովտում։ Սակայն նրա բոլոր յարձակումները յետ են մղուած։ Ալպ-դի-Պասացի շրջանում իտալացիները գործողութիւնների ինիցիատիւը իրենց ձեռքին են պահում։ Նրանք այդտեղ տիրել են մի շարք ամրութիւնների՝ թշնամու բոլոր հակայարձակումները յետ մղելով։

Ռումինական ճակատում պատերազմ յայտարարելուց մի քանի ժամ անց, սկսուած են թշնամական գործողութիւնները։ Ռումինացիք ամբողջ ճակատի վրայ յարձակումներ սկսելով՝ մի քանի կէտերից ներս են խուժել թշնամու հողը։ Նրանք հիւսիսային գծերի վրայ գրաւել են արդիւնաբերական կենտրոն Պետրոշէնին և Կրոնշտադի շրջակայքում մի քանի գիւղ։

***

# Ներքին տեսութիւն

## ԴՈԿՏՈՐ ՎԻԼԻԱՄ ՀԱՐՏՎԻԼ ԿՐԻՍՍԻ

Ամերիկացի բժիշկ Վ. Հ. Կրիսսին, որի գործունէութեան մասին երկարօրէն գրել ենք «Համբաւաբերի» № 28-ում, Ալաշկերտի որբանոցում երկար ժամանակ անձնուիրաբար գործելուց յետոյ, այժմ վերադառնում է Ամերիկա՝ անորոշ ժամանակով հանգստանալու համար։

Նրա կատարած գործը այնքան մարդասիրական և անշահախնդիր է, որին հայ ժողովուրդը չի կարող երախտահատոյց լինել որևէ կերպով, եթէ ոչ ակնածութեամբ իւր գլուխը խոնարհելով։

Հայ ժողովուրդի տառապանքի ձայնն էր, որ քաշեց բերաւ այդ յարգելի գործչին ազատ Ամերիկայից դէպի Փոքր Ասիոյ այդ դաժան միջավայրը, ուր քաղաքակրթութիւնն ու արդարութիւնը զոհ են բերուած վայրենութեան աստծուն։

Պատիւ այդպիսի հազուագիւտ և անձնուէր մարդասէրներին, որոնք ոչ միայն իրենց, այլ իրենց հայրենիքին են պատիւ բերում։

## ԹԻՖԼԻՍԸ 1854 ԹՈՒԱԿԱՆԻՆ

*Յիշողութիւններ Անդրէյ Միխայլովիչ Ֆադէևի, որ 1846—1857 թուականը եղել է անդամ Խորհրդի գլխաւոր կառավարութ. և կառավարիչ Կովկասի կողմերի պետական կալուածքների արշաւախմբի (экспедиція).(„Воспоминанія А. М. Фадѣева, 1790—1867 гг. Одесса, 1897) ունին շատ հետաքրքրական էջեր նուիրուած 1854 թուականի Թիֆլիսի նկարագրութեան և պատմութ. երբ Տաճկաստանի դէմ պատերազմը նոր էր սկսուել։*

«1-ն հոկտեմբերի ես վերադարձայ Թիֆլիս։ Շատ յուզմունքներ կրեցինք մենք այս տարում պատերազմի և թշնամու բազմաթիւ փորձերի պատճառաւ, որոնց միջոցով թշնամին աշխատում էր ներս մտնել մեր սահմանները, բայց մեր զօրքերի քաջագործութիւնները իշխան Բէհբութեանի և Անդրոնիկովի առաջնորդութեամբ ազատեցին մեզ այս դժբախտութիւնից։

«1854-դ տարին Անդրկովկասի համար անտարակոյս ամենախռովայոյզ տարին էր, սկսեալ այն ժամանակից, երբ Կովկասը միացել էր Ռուսաստանին։ Բոլոր առանց այն էլ ծանր պարագաները անչափ անյաջող բարդուեցան։ Պատերազմը ծագեց համարեա թէ անակնկալ և իշխան Վորոնցովի երկմտութեան պատճառով համարեա առանց պատրաստութեան։ Թիւրքերը, որ պաշարեցին մեր սահմանները, շատ զօրք ունէին, իսկ մենք սկզբում չափազանց սակաւ, այնքան սակաւ, որ անյողդողդ վստահութիւն սեփական ուժերի վրայ չէր կարող լինել։ Բէհբութեանն ինքը պատրաստուելով Բաշկադիքլեարի ճակատամարտն սկսելու, կամացուկ ասել է իմ որդուն, որ նրա մօտ էր ծառայում. «Գիտես, աղբէր ջան, ես այժմ աղօթում եմ Աստծուն, որ թիւրքի առաջին գնդակը ինձ դիպչէր»։ Շուտով նա տեսաւ, որ յաղթութիւնը կախուած է ոչ թէ զօրքի քանակից, այլ որակից։ Բայց միշտ չէր կարելի այդ բանի վրայ յոյս դնել, և եթէ թիւրքերը մեզ վրայ գէթ մի մեծ յաղթութիւն տանէին Ալէքսանդրապոլի տակ, այն ժամանակ անարգել կարող էին գնալ մինչև Թիֆլիս, որից ամենքը վախում էին։ Քաղաքը պաշտպանող ոչոք չկար։ Ընդ ամին, ըստ ընդհանուր կարծիքի, երկրի ամբողջ մուսուլման ազգաբնակութիւնը միանգամից ոտքի կը կանգնէր, կ՚ընդունէր թիւրքերին գրկաբաց և կը միանար նրանց։ Եւ այդ ժամանակ անտառներում կազմ ու պատրաստ նստել էր Շամիլը, ինչպէս գիշակեր թռչունը որսի վրայ, անհամբեր սպասելով յաղթութեան լուրին, որպէսզի սլանայ իւր բոլոր ուժերով թիւրքերին զօրավիգ լինե-

լու։ Հենց այս ամառ արդէն նա երևան էր հանել իւր յանդգնութիւնը խուժելով Կախէթ, անցնելով Ալազան գետը և գերելով Ճաւճաւաձէի, Օրբելեանի և շատ այլ իշխանների ընտանիքները։

«Կարող էր ամեն ինչ այսպէս պատահել թէ ոչ, այս անյայտ է. բայց բոլորն սպասում էին, որ այդպէս կարող է պատահել։ Այս բոլոր անախորժութեանց վրայ աւելացան և ուրիշները, որոնցից ամենախոշորը Վարանցովի մեկնումն էր և իշխանութեան անցնելը այնպիսի անձերի ձեռքը, որոնք վստահութիւն չէին ներշնչում։ Թիֆլիսում սկսեցին գործերը վարել երեք՝ գուցէ և արժանաւոր, բայց ոչ բոլորովին վստահելի զինուորական վարիչներ. Վարանցովի տեղակալ անատակ (неумѣлый) Ռէադը, Բէհբութեանը (որ նշանակուել էր հրամանատար թիւրքաց սահմանում գործող բանակի)՝ պառաւ Ռէուդը և բծախնդիր Ռոտը—երեքն էլ բոլորովին անընդունակ հասարակութեան ոգին արթուն-զուարթուն պահելու։

«Թիֆլիսի դրութիւնն այդ ժամանակ աննախանձելի էր։ Մանաւանդ աննախանձելի էր բոլոր ռուսների դրութիւնը. սրանք ահ ու դողով էին անցկացնում գիշեր ցերեկ, սպասելով տեղեկութեանց պատերազմական գործողութեանց կենտրոններից։ Բազարում, որ լիք-լեցուն էր թաթարներով ու թշնամի շատ տեղական տարրերով, միշտ շրջում էին խառնաշփոթ խռովայոյզ զրոյցներ, և ամեն օր պատահում էին ցաւալի ընդհարումներ։ Փողոցներում ռուսները սաէպ պէտք է առանց իրենց կողմից առիթ տալու լսէին այսպիսի բացականչութիւններ. «Այլևս երկար չէք թագաւորիլ այստեղ, շուտով ձեզ այստեղից կը վռնդեն։ Ձեր վախճանը մօտ է»։ Բնիկներից հայերը դեռ իրենց ուրիշներից աւելի անդորր էին պահում, յայտնելով, որ քաղաքին վտանգ սպառնալիս, կը պաշտպանեն այն պատճառով, որ եթէ «Թիւրքերի կողմն անցնելը մեզ հաշիւ չէ»։ Իշխանութեան կարգադրութեամբ քաղաքի բնակչութիւնը զինուեցաւ հրացաններով, մինչև իսկ Գերմանիայի գաղթականները. բոլորին շարում էին փողոցներում, հրապարակներում, վարժեցնում էին պատերազմական մարզանքների և զօրահանդէս կազմում։ Ամեն գիշեր քաղաքի փողոցներով և շրջակայքը շրջում էին զինուած հետևակ և ձիաւոր պահակներ, իսկ շրջապատի լեռների վրայ երեկոները վառում էին ահագին խարոյկներ, որոնք մինչև լոյս բոցավառում էին,—զգուշանալով, որպէսզի ոևէ յանկարծական յարձակում տեղի չունենայ։

«Ամենքը, որոնք կարող էին, հեռանում էին Թիֆլիսից Ռուսաստան։ Ամեն օր շարան-շարան ամեն տեսակի կառքեր, շքակառքեր (кареты), վաչիկներ (кибидки), սայլեր առաւօտից մինչև իրիկուն Գոլովինեան պողոտայով անցնում էին ռազմավիրական ճանապարհի ուղղութեամբ։ Մնում էին միայն անհրաժեշտութիւնից ստիպուած։ Նրանք, որոնք ծառայութեամբ և կամ գործերի պատճառով ստիպուած էին մնալ, շտապում էին իրենց ընտանիքները դուրս ուղարկելու։ Բարոյական յուզմունքները և վտանգները, անվստահութիւնը վաղուան չէին կարող, հասկանալի է, խորապէս չճնշել հասարակական և ընտանեկան տրամադրութիւնը, ինչպէս և բոլորի հոգեկան դրութեան վրայ մասնաւորապէս» (Фадеѣвъ հատոր Բ. էջ 187 և 188)։ Իսկ ասում են, թէ պատմութիւնը չէ կրկնւում։ (Кавказ. Слово. № 179. Մագիստրանտ)։

Պատմութիւնը դժբախտաբար աւելի յաճախ է կրկնւում, քան կարծւում է. և միայն Բուրբոնները չէին, որ ոչինչ չմոռացան և ոչինչ նոր չսովորեցին, այլև կան այդպիսի ազգեր և պետութիւններ, որոնք պատմութեան դառն դասերից անընդունակ են օգտուելու. վաղուց է ասուած՝ փորձածին կրկին փորձելը յիմարութիւն է»։

Ա.

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

Մի քանի օրից յետոյ պիտի վերսկսուի գաղթականական դպրոցների և որբանոցների ուսումը։

Տարագիր և արնաքամ ժողովուրդի ապագայ յոյսն ու կեանքը կազմող որբերի ու երեխաների դաստիարակութեան գործը անհրաժեշտ է որ լուրջ ուշադրութեան առնուի և վերսկսուող ուսումնական տարեշրջանում աւելի կազմակերպուած ու կանոնաւոր հիմքերի վրայ դրուի։

Ծնողազուրկ ու յօշոտուած այդ բազմաթիւ երեխաներիցն է, որ պիտի կազմուի ապագայ հայութիւնը։ Նրանք են, որ պատերազմից յետոյ վերադառնալով իրենց երկիրը ու քաղաքակրթութեան՝ հայկական մտքի ու տենչերի կրակ վառեն այնտեղ։ Նրանց երակներիցն է որ պիտի յորդէ մեր պապերի ու հայրերի անբիծ արիւնը և նրանց հոգիներում պիտի թրթռայ ցեղին յարատևութեան ու պահպանութեան անմեռ բնազդը։

Ուրեմն որքան մեծ և փափուկ մի խնդիր է այդ տարագիր ճուտերի կրթութեան գործը. որքան սրբազան ու բարձր է նրանց դաստիարակելու պարտականութիւնը։

Չենք ժխտում, որ անցեալ ուսումնարանական տարեշրջանում շատ մեծ ճիգ և աշխատանք թափուեցաւ գաղթականական դպրոցներն ու որբանոցները վարող մարմինների կողմից, որոնք իրենց ուժերի սահմաններում աշխատեցին որչափ կարելի է բաւարար հիմքերի վրայ դնել երախաների դաստիարակութիւնը։ Բայց ընդ սմին եղաւ նաև ցաւալի վրիպումներ և թիւրիմացութիւններ, որոնք յոռի արդիւնքներ ունեցան։ Այդ թիւրիմացութիւնները յառաջ եկան յանկարծական և չընախատեսնուած գաղթականութեան և ռուսահայ մարմինների տաճկահայ ուսուցիչների պատրաստութեան և կրթական ցէնզին անտեղեակ լինելուց։

Այդ բոլորի պատճառաւ էր, որ մեծ թուով գաղթական երախաներ մնացին առանց ուսման և միւս կողմից որբանոցների և դպրոցների մէջ՝ յարգելի բացառութեամբ՝ պաշտօն վարեցին այնպիսի ուսուցիչներ, որոնք ուսուցչական պատրաստութիւնից հեռու էին և ապրելու, կեանքը մի կերպ քարշ տալու ստիպողականութիւնից դրդուած սպրդել էին այդ նուիրական ասպարէզը և մանկավարժական գործի վերաբերեալ իրենց տգիտութեամբը ու անճարակութեամբը վնաս պատճառեցին գաղթական երախաների դաստիարակութեան։

Բոլորին պէտք է յայտնի լինի, որ Տաճկաստանում ուսուցիչները զինուորագրութիւնից ազատ մնալու արտօնութիւն ունէին, այդ պատճառով Վանում առժամապէս կազմուեցաւ մի դպրոցական խորհուրդ, որից ուսուցչական վկայականներ ստացան նաև այնպիսի մարդիկ, որոնք նոյնիսկ դպրոցի երեսը տեսել չէին և հազիւ էին կարողանում սեւ ու սպիտակը իրարից զանազանել։ Ահա այդպիսի վարժապետները՝ զինուած այդ կերպ վկայականներով՝ տեղ գտան գաղթակ. դպրոցներում և մի կերպ սեւը ներս՝ սպիտակը դուրս մի տարի կարողացան կատարել իրենց պաշտօնը։ Եղան նաև մարդիկ, որոնք ոևէ միջնական դպրոցից վկայական չունենալով հանդերձ, «ճանապարհին կորսուած է վկայականը» ասելով կարողացան պաշտօն գտնել զանազան տեղերում։

Միւս կողմից հանգամանքների անյաջողութիւնից ստիպուած՝ ցէնզ և պատրաստութիւն ունեցող գաղթական ուսուցիչներից շատերը՝ իրենց զարգացման և կոչման համապատասխան տեղ և վարձատրութիւն չկարողացան գտնել և այդպիսով տաճկահայ ուսուցչութեան հմայքն ու բարձր արժէքը մասամբ կորուեցաւ այդ անանուն ուսուցիչների հրապարակ գալով։

Այս հանգամանքներն ու թիւրիմացութիւնները պէտք է պարզ լինին գաղթական երեխաների կրթութիւնը վարողներին, որպէսզի յառաջիկայ ուսումնական տարեշրջանում ի վիճակի լինին՝ որչափ կարելի է խոյս տալ այդպիսի սխալներից։

*Մեր կարծիքով գաղթական ուսուցիչների պատրաստութեան ու ցէնզի աստիճանը միմիայն կարող են իրենք Տաճկահայերը գիտենալ։ Գաղթական փորձառու ուսուցիչներից և գործիչներից հարկաւոր է կազմել մի մարմին, որ յատկապէս զբաղուի այդ ուղղութեամբ։ Ինչպէս լսում ենք, Երեւանում և Թիֆլիսում կազմուել է տաճկահայ մի ուսուցչ. միութիւն, որի վարչութիւնը ամենալաւ գործ կատարած կը լինի, եթէ գաղթականական դըպրոցները ղեկավարող մարմիններին ցոյց տայ վարձուելիք ուսուցիչների պատրաստութեան և փորձառութեան չափն ու աստիճանը։*

*Այդ կերպով այն մարդիկ, որոնք ուսուցչական կոչումով մտել էին ուսումնական ասպարէզը՝ դուրս կը մնան այդ նուիրական ասպարէզից և այն կը յանձնուի այդ գործին համապատասխան ոյժերի։*

*Մենք վստահ ենք, որ գաղթական իսկական ուսուցիչները բաւական պատկառելի մի գումար կը կազմեն և եթէ նրանց վերաբերեալ յաջող դասաւորութիւն ու տեղաւորութիւն լինի, տարակոյս չկայ, որ գաղթականական դպրոցների և որբանոցների ուսումնական գործը՝ անցեալ տարեշրջանից աւելի արդիւնաւոր և օգտակար պիտի լինի։*

*Տաճկահայ լաւագոյն ուսուցիչների նիւթական գնահատութիւնն էլ պէտք է աչքի առաջ ունենալ։ Հարկաւոր է վառ պահել նրանց բարոյական արիութիւնն ու ուսումնական գործին հանդէպ ունեցած նրանց եռանդը։*

*Այսպէս թէ այնպէս նրանք են ապագայ Տաճկահայ մտաւորականութեան պատուանդանները, նրանք պիտի կրեն վերաշինուող երկրի մշակութային ու մտաւոր վերածնութեան ծանր աշխատանքները։*

*Ծ. Թորգոմեան*

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

*Մի նոր ճգնաժամի առջև է ապրում այսօր Պարսկաստանի հայութիւնը։ Բաւական չէր դեռ Տաճկահայերի կրած անհաւոր կորուստներն ու տառապանքները, այժմ միենոյն դրութեան է մատնուած հայ ժողովրդի մի ուրիշ հատուած՝ Պարսկահայութիւնը։*

*Համադանի և Քիրմանշահի կողմերում և դէպի Պարսկաստանի սիրտը գրոհ տուող թիւրքական բանակը իր բարբարոսութեան բնազդներին զոհ է դարձրել խաղաղ քրիստոնեայ ընակչութիւնը, որ ստիպուած է թողնելու իր ինչքերն ու հարստութիւնը և փախչելու դէպի ապահով վայրեր՝ նիւթական ու ֆիզիքական ծանր կորուստների մատնուելով։ Հայ փախստականների մի մեծ կարաւան շարժուել է դէպի Ռաշտ ու Էնզէլի, որ համեմատաբար աւելի ապահով են։ Ռաշտի 100 ծուխից բաղկացած հայ հասարակութիւնը արդէն ձեռնարկել է շուտափոյթ օգնութիւն ցոյց տալու փախստականներին, որոնց մէջ երեւացել են խոլերայի և ուրիշ վարակիչ հիւանդութիւններ. բայց ծով կարիքի առջև մի փոքրիկ հասարակութիւնն ինչ կարող է անել, եթէ շուտափոյթ օգնութեան ձեռք չը կարկառեն Կովկասի գաղթականական յանձնաժողովները։*

*Կաթողիկոսը արդէն հեռագրել է Բագուի փախստականներին օգնող Յանձնաժողովին, ինչպէս հաղորդում է «Արև» թերթը, որպէսզի վերահաս վտանգի առաջն առնելու միջոցներ ձեռնարկուի։ Իրօք Բագուն աւելի մօտ լինելով Ռաշտին, ուր տեղաւորուած են այժմ պարսկահայ փախստականները, կարող է դիւրաւ օգնել նրանց։*

*Միւս կողմից Վանի նահանգապետը և գեներալ Թամամշեանը թոյլատրել են Վասպուրականի փախստական ազգամարդկանց վերադառնալու իրենց տեղերը՝ գիւղատնտեսական և այլ կիսատ թողած աշխատանքները ամբողջացնելու և կրկին իրենց տեղերում հաստատուելու համար։ Արդէն որոշ չափով Վասպուրականցիները վերադարձել են։ Երևանի «Աշխատանքը» տեղեկացնում է, որ Թիմարի շրջան վերադարձած են Դանիէլ Վարդ.-ի առաջնորդութեամբ մօտաւորապէս 3000 թիմարցիք և շատախցիք։ Սոյն վերադարձողները ենթարկուած են քրդական յարձակումների... Դարձեալ հայրենի լեռներում թագնուած օձերը շարժում են իրենց գլուխները...*

*Հ. Կ. Կոմիտէին հեռագրում են, որ լեռնային ճանապարհով Բասեն են գնացել 5,000 փախստակ., Մուշի հովտում մնացել են 30 փախստակ.։ Բասեն եկած 10,000 փախստականներից մեռել են 5 մարդ։ Իգդիրում գտնուող փախստականներին օգնող մարմինները հեռագրում են, որ հացի և շաքարի մեծ պակասութիւն կայ այնտեղ և խնդրում են անմիջական օգնութիւն։ Զարմանալի է, որ մարմինները առաջուց չեն հոգացել այդ մասին և հիմա վտանգի իրականացած վայրկենին իրար են անցել։*

*Անհրաժեշտ է, որ գաղթական ընտանիքներին տեղաւորեն համապատասխան վայրերում. գիւղացի ընտանիքները՝ գիւղերում, իսկ քաղաքացիները՝ քաղաքներում։ Հարկաւոր է, մինչև այս մղձաւանջի վերջը փախստական ընտանիքները մնան Կովկասում, իսկ տղամարդիկ կարող են երկրի համեմատաբար ապահով շրջանները վերադառնալ՝ վերաշինութեան գործը յառաջ տանելու համար։*

*Գ. Շարաֆեանի զեկուցման համաձայն, յուլիսի 12-ից, երբ ռուսները տիրապետում են Երզնկային, սկսում է գաղթականական հոսանքը, գլխաւորապէս Դերսիմում ապաստանուած հայերը։ Մինչև օրս այդտեղ անցել են 2500-ից աւելի հայեր, որոնցից մօտ 1000 հոգի անցել է Էրզրում և ներկայումս տեղաւորուած է 850-ի չափ Էրզրումի շրջանի երեսուն և մէկ գիւղերում, իսկ Բաթում գտնւում են 250-ի չափ։ 1500 գաղթականներից մօտ 1200 հոգին ապաստան են գտել Երզնկայի մօտի՝ Ակրակ, Երկան, Մոլլա գիւղ, Գեղենցիկ, Ուրում-Ակրակ, Գիւլագժա, Մեղուցիկ հայկական գիւղերում և Դիրջանի հովտի գիւղերում. Երզնկայում կան մօտ 800 հոգի. պէտք է չեշտել որ մեծամասնութիւնը ազատուածներից կանայք և երեխաներ են։ Երզնկայի շրջանից ուղարկուած է Էրզրում մօտ 200 որբ և մնում էին Երզնկայում 150-ի չափ որբեր, որոնք պէտք է ուղարկուէին Էրզրում։ Բայց պէտք է չեշտել որ մինչև օրս էլ ամեն օր Դերսիմի կողմերից գալիս են օրական մի քանի տասնեակ նոր գաղթականներ. ինչպէս պատմում են ազատուածները և տեղեակ անձինք, Դերսիմում դեռ ևս պատսպարած են մօտ 8000 հայ, Բաբերդում 8000, իսկ Սւագում մօտ 10,000. դոքա ոչ թէ միայն այդ շրջանի հայերից են, այլ բոլոր նահանգներից հաւաքածներն են։*

*Եթէ Երզնկայի թշուառները բոլորն էլ մինչև օրս պահպանել են իրենց գոյութիւնը, այդ բանում նոքա պարտական են միմիայն պալկովնիկ պարոն Բեժանբէգեանին և բժ. Տէրտէրեանին, որոնք ոչ մի եռանդ և միջոց չեն խնայել նոցա օգնելու համար։ Ոչ պակաս աջակցութիւն են ցոյց տուել պարոն Սուրէն Տէր-Աբրահամեանը և Դեոյեանը։ Ներկայումս Բայբուրդում և շրջանի 18 հայկական գիւղերում տեղաւորուած են մօտ 600 գաղթականներ։*

*Իսկ շատ գրաւուած վայրերում հպատակութիւն յայտնած թիւրք ընտանիքների մօտ դեռևս պահւում են մեծ քանակութեամբ հայ կանայք և երեխաներ։*

*Դժբաղդաբար բարբարոսութեան ճիրաններում յօշոտուող այդ խեղճերի ազատագրման համար դեռևս պաշտօնական որևէ ձեռնարկ չէ արուել։*

*Զարմանալի է տեսնել մեր արիւնռուշտ թշնամիներին և վայրենի հօրդաներին ցոյց տրուած գուրգուրանքը։ Մինչդեռ Հայ նահատակ ժողովուրդի բեկորները տակաւին արեան և բարբարոսութեան մէջ կը տնքան...*

*Զարմանալի է նաև Ռուս մամուլի զաքարիայի պաղանձական լռութիւնը։*

*Հայորդի*

# «ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ»

## Ա.

## ՏՆՏԵՍԱԿԱՆ

### 1 Դասագին

Մեր դպրոցներում, շատ չնչին բացառութեամբ, դասատուի ռոճիկը սահմանելիս առաջնորդւում են միշտ նոյն հնացած ձեւով, այն է՝ միանգամից 26—27 դասի համար 450—600 ռ. նշանակելով։ Այս եղանակն ունի իր մի քանի անցանկալի կողմերը. նախ՝ ուսուցչի աշխատանքն ըստ պատշաճի և ըստ դասերի քանակի չի գնահատւում. եղել են դէպքեր, որ նեղ տեղն ընկած ժամանակ, կամ հենց պայմանաւորուելուց յետոյ՝ դիտաւորեալ կերպով դասատուի 25—26 դասը հասցրել են 30-ի, առանց ռոճիկի աւելացման. երկրորդ՝ արտադպրոցական պարապմունքներն ու աշխատանքները գնահատութեան չեն առնւում և երրորդ, որ առաջ էր գալիս մի տեսակ սակարկութիւն, որ պատիւ չի բերում ոչ հոգաբարձուներին, ոչ էլ մանաւանդ ուսուցիչներին։ Եղել են դէպքեր, երբ դպրոցական գործի հետ խաղացող դասատուներ 600-ը հասցրել են 300-ի, նոյն իսկ 200-ի և իրենց պատրաստակամութիւնը յայտնել այդ ռոճիկներով պաշտօնավարելու։ Այս և նման անցանկալի երևոյթներին վերջ տալու համար ամեն դպրոցի հոգաբարձութիւն պէտք է մի անգամ ընդմիշտ մի կանոն դարձնի իր համար գնահատման ամենաարդարացի և գեղեցիկ ձեը՝ դ ա ս ա գ ի ն ը՝ համաձայն իր դպրոցի նիւթական կարողութեան։ Այս դէպքում ուսուցիչը այլ ևս տատանումների չի ենթարկուի և կիմանայ, թէ ինչ դպրոցում ինչ չափով են վարձատրւում դասերը։ Ըստ իս, դասերի առաւելագոյն թիւը պիտի ընդունել 24. բայց որ գլխաւորն է՝ պիտի այնպիսի տանելի դասագներ սահմանել, որ ծիծաղ չառաջացնի և գէթ բաւարար չափով ապահովի ուսուցչի կեանքը։ Բացի այդ տարէցտարի հոգաբարձութիւնը ջանալու է աւելացնել դասագինը, որով դպրոցը հեռու կը պահի ամեն տարի ուսուցիչների փոփոխմամբ առաջացած վնասից, որովհետև ուսուցիչների յաճախակի փոփոխումը ուղղակի խանգարում է դպրոցի յառաջադիմութեան։

### 2. ԱՐՏԱԿԱՐԳ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐ

Արտակարգ աշխատանքներ խօսքի տակ պիտի հասկանալ դպրոցական այն աշխատանքները, որոնք դասերից դուրս պատասխանատու և առանձին եռանդ ու ժամանակ պահանջող պարապմունքներ են, սակայն մեզնում չեն վարձատրւում. այդ են դաստիարակութիւն, վերակացութիւն, գրադարանապետութիւն, մանկավարժ. և հոգաբարձ. ժողովների քարտուղարութիւն, գրաւոր աշխատանքներ։ Քիչ թէ շատ բարեկարգ դպրոցներում այդ աշխատանքները գրեթէ մի մի պաշտօններ են։ Ախալցխայի, Ախալքալաքի, Գորու, Թանդոյեանի, Նորաշէնի նման 180—800-ի չափ աշակերտութիւն ունեցող դպրոցներում գրադարանապետի պաշտօն վարելը, կամ այդչափ աշակերտութեան լեզուի և մաթեմատիկայի գրաւորներ ուղղելը որքան եռանդ, ժամանակ և պատասխանատուութիւն է պահանջում։ Ամեն աշխատանք պէտք է գնահատուի, այլապէս նախ՝ այս ձևով թողնելն անարդարութիւն է և անխղճութիւն և երկրորդ՝ անվարձ պաշտօնները կը տարուեն անբարեխղճօրէն և ցանկալի հետևանք չի ունենայ։

### 3. ԴՊՐՈՑԱԿԱՆ ՇԷՆՔ ԵՒ ԻՆՎԵՆՏԱՐ

Դպրոցական յառաջադիմութիւնը փոխադարձ յարաբերական է ինչպէս ուսուցչական կազմի որակին, այնպէս և դպրոցը շրջապատող պայմաններին։ Մեզ մօտ շատ անգամ երկրորդական նշանակութիւն են տալիս դպրոցական շէնքին, մինչդեռ ըստ ամենայնի անյարմար շէնքը խիստ հակառողջական է աշակերտների համար։ Տեսել եմ դպրոցներ, որոնց դասարանները լուսաւորւում են միայն մէկ պատուհանով, առաստաղից կաթում է ջուրը, պատերից գարշահոտութիւն է փչում, այնքան խոնաւ են, իսկ յատակը այնքան սառն է, որ աշակերտները հիւանդանում են ցրտից. այս բոլորից յետոյ աւելորդ է խօսել գրատախտակի, նստարանների և ուրիշ անհրաժեշտ դպրոցական պիտոյքների անպէտքութեան մասին։ Պէտք է ազատել մանուկ սերունդը նման հակառողջական շինութիւններից։ Այնուհետև լուրջ կերպով պիտի մտածել և դպրոցական ինվենտարի մասին. այդ յիշատակւում է նաև Դպր. ներքին կանոնադրութիւնը, ըստ որում հոգաբարձութիւնը պարտաւոր է ամեն տարի իր բիւջէի մէջ տեղ տալ նաև յիշեալ ծախսին։ Կան առարկաներ, որոնց դասաւանդութիւնը և աշակերտներին ըմբռնելի դարձնելը սերտ կերպով կապուած են զանազան համապատասխան գործիքների, նկարների, մեքենաների, սրուակների, համրիչների ու այլ իրերի հետ, առանց որոնց անցած դասը սաների համար կը մնայ անմատչելի, վերացական, հետևապէս և դասատուի ջանքերը կանցնեն ապարդիւն։ Այստեղ աչքաթող չը պիտի անել և գրադարանը նորանոր մանկական գրքերով ճոխացնելու անհրաժեշտութիւնը։ Այս բոլորի վրայ պիտի շատ լուրջ ուշադրութիւն դարձնել։ Այդ նպատակին տարեկան 30—40-ական ռ. յատկացրած գումարները 5—6 տարուց կը հարստացնեն դպրոցը անհրաժեշտ գործիքներով։

### 4. ՄԻԱՑԵԱԼ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐ

Մեզ մօտ ցայսօր շատ ուսումնարաններում դեռ չի վերացել մի «տէր-Թոդիկեան» կորստաբեր երևոյթ։ Լսած կը լինէք միացեալ բաժանմունքների մասին, որ բացի հակամանկավարժական լինելուց՝ ուղղակի դժոխային աշխատանք է դասատուի համար, մանաւանդ երբ մի սենեակում տեղաւորուած են երեք բաժանմունք, այն էլ իրար միանգամայն անհամապատասխան։ Լաւ է կրճատել մէկ, նոյն իսկ երկու դասարան, քան թէ կատարել մի ապարդիւն աշխատանք—«արջի ծառայութիւն»։ Այդ միացումները սովորական են մանաւանդ օտարախօս դպրոցներում։ Կասկածից դուրս է, որ նման տիպի դպրոցներում առարկաները լիակատար ձևով անցնելը հնարաւոր չէ. անցածն էլ աշակերտները յիշում են վայր ի վերոյ և կիսատ ու պռատ։ Հրամայական պահանջ է դրւում այդ եղանակը վերացնելու [1])։

### 5. ԾԽԱԿԱՆ ՏՈՒՐՔ

Տարօրինակ խոչընդոտների է հանդիպում մեզնում նաև ծխական տուրքի պարզ հարցը քաղաքներում, մինչդեռ շատ գիւղերում և աւաններում այդ իրականացած է և ամեն տարի գանձւում է։ Ահաւասիկ թէ ինչ է ասում օրէնքը քաղաքների վերաբերմամբ և ինչ իրաւունքներ է տալիս մեզ, որից մենք չենք օգտւում. «Пятый пунктъ временныхъ правилъ Е. И. В. на Кавказѣ, изданныхъ въ августѣ 1905 года правилы это относятся къ управленію армянскими перковными училищами и церковными имуществами. Пятымъ пунктомъ разрѣшается церковной общинѣ (ծխական համայնք) обложить себя сборомъ въ пользу церковно-приходской школы и другихъ учрежденій. Объ установленіи этого сбора составляется мирскій приговоръ (համախօսական) и сборъ становится объязательнымъ для тѣхъ, которые

[1]) Ոչինչ չունենք օտարախօս հայ մանուկներին դպրոցական բաժանմունքների միացնելու դէմ առարկելու, քանի որ այդպիսիները պէտք է շատ շատ և շատ ու շատ լսեն ու խօսեն հայերէն։ Մինչդեռ մեր հայախօս աղքատ դպրոցների համար գէթ երկու ստորին ա. և բ. կամ բ. և գ. բաժանմունքների միացումը տնտեսական ահագին առաւելութիւն է. միայն թէ պէտք է խոստովանել, որ այդ դժուարին գործ է և մեր մանկավարժական պատրաստութիւնից ընդհանրապէս զուրկ ուսուցիչների համար անհնար իրագործելու։

Ծանօթ. Խմբագր.

подписываютъ». Այնուհետև այդ համախօսականը ներկայացւում է քաղաքային վարչութեան, որ և իր հերթին պետական հարկերը հաւաքելիս պաշտօնապէս գանձում է և այդ կամաւոր տուրքերը յանձնում ծխական հոգաբարձութեան։ Երևակայեցէք որպիսի վիճակ կը ստեղծուի Թիֆլիսի բոլոր ծխական դպրոցների, Գանձակի, Ախալցխայի, Երևանի և ուրիշ քաղաքների ծխական դպրոցների համար, եթէ սահմանուի *ծ խ ա կ ա ն  տ ո ւ ր ք ը*։

Գիտակ

(Շարունակութիւնը հետևեալ անգամ)

---

## ԳԱՒԱՌ

ԱՇՏԱՐԱԿ, 8 օգոստոսի.—Այսօր տեղիս տարրական դպրոցի շէնքում նախագահութեամբ պ. Վ. Շահազիզեանի կայացաւ սպառողական «Ցոլս» ընկերութեան ընդհանուր ժողովը։ Ժողովը միաձայն որոշեց խանութին կից փուռ բանալ։

Ժողովին ներկայ էին նաև կողմնակի մարդիկ, որոնք խոկոյն անդամագրուեցին։ Անդամների թիւը հասել է 400-ի և օր օրի վրայ աւելանում է։

Ժողովը որոշեց կողմնակի մարդկանց շաքար, նաւթ, սապոն չվաճառել։

Խանութի նախկին կառավարիչը օգոստոսի 1-ին հրաժարուեց, որի տեղը ընտրուեց պ. Կարապետ Ատոմեանը։

Արդէն վերջացել է ցորենի հունձը, որի պուդը ծախւում է 5 ռ. 55 կոպ., ունեցողն էլ պահում է աւելի թանգ գնով ծախելու։ Կենսամթերքների գները օր օրի վրայ բարձրանում են։

Տեղիս փոխատու-խնայողական ընկերութիւնը ստացել է մեծ քանակութեամբ ծծումբի փոշի և արջասպ։ Ծծումբի փոշու պուդը ծախւում է 16 ռ. 50 կ., իսկ արջասպը 22 ռ 50 կ.։

Հ. Գնունի

—

ԴԻԼԻՋԱՆ, 11 օգոստոսի.—Դիլիջան, իբր ամառանոց, առողջապահական տեսակէտից առաջնակարգ տեղ է բռնում Կովկասում։ Որ Դիլիջանը առողջարար տեղ է, դորան ապացոյց են հետևեալ փորձերը. առաջին՝ 1878թ. ռուս-տաճկական պատերազմի ժամանակ, երբ Դիլիջանն աւելի մօտ էր ռազմաբեմին, հենց որ տիֆով հիւանդներին բերում էին Դիլիջան հիմնած հիւանդանոցը, իսկոյն առողջանում էին. երկրորդ՝ 1892 խոլերայի տարին Դիլիջանում ոչ մի դէպք չպատահեց, մինչդեռ Աբասթումանում, Բորժոմում և այլ կովկասեան ամառանոցներում խոլերայի անհամար դէպքեր տեղի ունեցան. երրորդ ապացոյցն է Թիֆլիսից ուղարկած 60 թոյլ որբերի վիճակը, որոնք այժմ բաւական կազդուրուել են…

Առայժմ ես նկատեցի Դիլիջանում հետևեալ առաջադիմութիւնը «շինարարական» գործում. նախկին գրադարանը մեծացնում են, շինւում է երկրորդ յարկը, լայնացնում են բեմը.—յետոյ Դիլիջանից 2—3 վերստ հեռու դէպի Երևան տանող ճանապարհին պղնձահանքի մօտ կառուցւում է արհեստանոց-գործարանի շէնքը։ Արհեստանոցը պիտի բանէ ջրի զօրութեամբ. արհեստանոցում յատկապէս աշխատելու են որբեր, որոնք շինելու են Վիէննայի տեսակի աճարի ծառերից կահ-կարասիք (աթոռներ)...։ Այդ տեսակ գործարանը Դիլիջանին մեծ զարկ կը տայ և կը դառնայ մեր գիւղացութեան համար արդիւնքի նոր աղբիւր։ Գործարան-արհեստանոցը կառուցւում է Մեծ Իշխանուհու Տատեանա Նիկոլաեւնայի կոմիտէի հաշուով. կոմիտէի փոխ-նախագահը, Փոխարքայի օգնական իշխան Օրլովը, պ. Ս. Յարութիւնեանի խնդրանօք, 7000 ռ. յատկացրել է յատուկ գործարանի շէնքի համար։ Գործարանի մնացած մասերը կառուցանելու՝ վարպետների վարձը, մեքենաներ բերելը և այլն ծախսերը յանձն է առել Հայկական Կենտրոնական Կոմիտէն։

Նոյն այդ գործարանի մօտ տեսայ ես և մի հիանալի ագարակ գետախնձորով, բանջարեղէնով են, որ մի տաճկահայի աշխատանքի արդիւնք է։

Հովեկները սկսում են վերադառնալ իրանց տեղերը։ Տարածուած այն լուրը, թէ Դիլիջանում թանգութիւն է տիրում—սխալ է. ընդհակառակը այստեղ գտնւում է ամեն բան՝ պանիր, իւղ և աժան են։

Եղանակը հիանալի է։

Տ. Աթաբէգեանց

—

Դ ի լ ի ջ ա ն.—Դիլիջանի փախստական որբերի ապաստարանների թիւը այժմ 10 հատ է, որբերի թիւը 814 հոգի։ Որբանոցում վաղուց չկան այլևս տարափոխիկ հիւանդութիւններ, բացի քոսից, որի դէմ առնուած են հարկաւոր բժշկական միջոցներ։ Որբերը ֆիզիքապէս շատ առողջ են. նոյն իսկ Բիթլիսից բերած թոյլակազմերը բաւականին առողջացել են։ Պատրաստել են բնակարաններ 250 նոր որբերի համար, որոնք արդէն հասել են Ալէքսանդրապոլ և մի քանի օրից յետոյ կլինեն այստեղ։ Որբանոցներում կրթութեան հետ լայն հիմունքների վրայ դրուած է աշխատանքի սկզբունքը և բացուած են մի քանի արհեստանոցներ։

—

Իգդիր, 10 յուլիսի.—Պատերազմի ընթացքում Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը ցոյց է տուել որոշ գործունէութիւն։ Հայ Կենտր. Կոմիտէից ստացած 1000 վերմակները և հագուստեղէնը բաժանել է թէ Իգդիրի և թէ Արծափի և Մուսունի շրջանների գաղթականներին։ Իգդիրի շրջանում ձրիապէս գործել է հ. Սամուէլ քահանան, որը 19 գիւղ ոտքով ման գալով նախ ցուցակագրել է բոլոր փախստականներին և ապա բաժանել հագուստները։ Լիազօր Մ. Բաղդասարեանի մահուան պատճառով, Արծափի ու Մուսունի շրջանի գաղթականական գործերը նոյնպէս ձրիաբար յանձնառու եղաւ յիշեալ Սամուէլ քահանան, որի անխոնջ ծառայութեան համար Վարչութիւնը յայտնեց իւր խորին շնորհակալիքը։

Իգդիրցի

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բար. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացել է Սոֆիա Գրիգորեան Շահնազարեանից 100 ռուբլի, որից յօգուտ գերի հայերի 50 ռ. և յօգուտ որբերի 50 ռ.

***

Պ. Յովհաննէս Կարապետեան Կապլանեանցը ներկայացնելով հարիւր ռ. խնդրեց ընդունել իրեն Ընկերութեան մշտական անդամ։ Խորհուրդը յարգելով պարոնի խնդիրը, որոշեց տալ նրան մշտական անդամութեան մրցագիր (ДИПЛОМЪ)։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Խոյթայի ծխ. դպրոցի Հոգաբարձութիւնից յօգուտ փախստականների 143 կտոր շոր, որից 60-ը՝ շապիկ, 16-ը վարտիկ, 16 իւրկա, 20-ը կոֆտա, 17-ը՝ երեսորբիչ, 6-ը՝ լաչակ, 6-ը՝ թաշկինակ, 1-ը՝ գոգնոց և 1 զոյգ ոտնաման։

***

## ՃԻՒՂԵՐ

ԻԳԴԻՐԻ ճիւղի վարչութեան զեկուցումից երևում է, որ 1914 թ. յունիսից մուտք ունեցել է 581 ռ. և ելք 390—64 կ., մնում է կանխիկ 190 ռ. 36 կ.։ Վարչութիւնը ի նկատի առնելով պատերազմական դրութիւնը, գրադարան-ընթերցարանը առժամանակ փակուեց։ Գրադարանի և այլ պարտքերը վճարուեց դրամատանը եղած դպրոցական ֆոնդի մնացած 100 ռուբլով։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների Սկվիրայից պ. Սահակ Մելիքսեդեկեանից 35 ռ.

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Գաղթականական գործի Կովկասի գլխաւոր լիազոր Թամամշեանից.

«Յայտնում եմ ի գիտութիւն, որ Կովկասեան զօրքերի գլխաւոր հրամանատարի կարգադրութեան համաձայն Վանի և իր շրջանի շարունակուող յետագայ դատարկումը ընդհատւում է. Թոյլատրուած է ազատ վերադարձ իրենց հին տեղերը միմիայն բնիկներին։

—

Կողբ—Կորիւն Ղազարեանից.—

«Մեր վերջին կէտերում Աղչայի և Իգդիրի միջև գործում է Եղբայրական Օգնութիւնը, որ բաժանում է ալիւր. շաքար չըկայ. սաստիկ շոգ է։ Փախստականները խմում են տեղական անառողջ ջուրը հում։ Ուտում են փտած մրգեր. հիւանդութիւնները անխուսափելի են։ Գնում եմ Իգդիր պարենաւորման պահեստից փախստականների համար թէյ և շաքար գնելու։ Այսպիսով թերևս փրկենք ժողովուրդը հիւանդութիւններից։ Կարօ Սասունին այստեղ է իր խմբով։ Նա այստեղ իր հետ բերած շաքարը բաժանում է։ Բժիշկ Մանուչարեանը բժշկական օգնութիւն է ցոյց տալիս այս գծով անցնողներին։

—

Երևանից—Կորիւն Ղազարեանից.

Ժողովը Խորէն եպիսկոպ. նախագահութեամբ վըճռեց տեղաւորել փախստականներին Արագածի փէշերին։ Եղբայրական Օգնութիւնը ճանապարհին բանում է 3 սըննդատու կայան. Մոսկուայի Կոմիտէն իր վերայ է վերցրել Արագածի շրջանում սննդատու կայանների բացումը։

—

Երևան—Փափազեանից

Զօրքի հրամանատարի կարգադրութեամբ Վանի ժողովուրդը պիտի վերադառնայ. մթերքների ուղարկելու պահանջը անյետաձգելի է։

—

Իգդիր—Աստղիկ Աղասեանից.

Մուշի գաղթականները հազարներով Կաղզուանի վրայով գալիս են Սարիղամիշ գաւառը. Նոյն պիտի ընակեցնեն Բայազիդի շրջանում, նոյնպէս և Վանի գաղթականները։ Խնդրում եմ անյապաղ ուղարկէք մի քանի վագոն ալիւր։

—

Բայազիդ—Փափազեանից

Ներկայումս Վանից եկած 15,000 անտէր-անօգնական գաղթականներ լցուել են Բայազիդի դաշտը։ Զնայած խորհուրդ են տալիս վերադառնալ, բայց յաճախ նահանջների, անտեսական միանգամայն քայքայման, ապահովութեան բացակայութեան, կեանքի և ճանապարհների անապահովութեան պատճառաւ ժողովուրդը տարակուսած տատանւում է։ Իրենց դրութեան պարզութիւն սպասելով գաղթականները քաղցած են մնում, մթերքներ չկան, եղած օգնութիւնը չնչին է։ Խնդրում եմ անյապաղ ուղարկել մթերքներ և խորհուրդ տալ՝ ո՞ւր ուղարկել անտէր գաղթականներին։ Ցուրտ անձրևները, քրդերի յաճախակի յարձակումները դրութիւնն անելանելի են դարձրել. սպասել անհնար է։ Անյապաղ օգնութիւն կազմակերպեցէք Իգդիրում, Երևանում։

—

Ղարաքիլիսա—Փարաջանեանից

Գաղթականների մի մասը թողնում ենք գիւղերում. թոյլ տուէք բաժանել 100 փութ ալիւր և փոխադրեցէք 4000 ռուբլի։

—

Սարիղամիշ—Շարաֆեանից

Մթերքների օգնութիւնը ճանապարհին լաւ է կազմակերպուած։ Սեփական փոխադրութիւնը (տրանսպորտը) 26 սայլից բաղկացած 1,000 փութ ալիւրով լաւ ժամանակին հասաւ Խնուս. այդ սայլերով Ալաշկերտի վըրայով որբեր են բերում։

—

Բաշ-գիւղ—Աղամեանից.

Ղարաքիլիսից դէպի Կաղզուան օգոստոսի 6-ին ճանապարհ ընկան 1,121 գաղթական, 8-ին 3025, 9-ին 460, 10-ին 2753, 11-ին 1,980, 14-ին 691, 15-ին 178, ընդամենը 10,247. ազատւում է 1,000 հոգի։

—

Բագու—Տերմիկ Սելեանից

Անհրաժեշտ է թոյլտւութիւն խնդրել 800 մէշոկ ալիւր ուղարկել Ռաշտ և հարիւր փութ շաքար այստեղի գաղթականութեան համար։

Դրութիւնը շատ լուրջ է։

—

Երևան—Կարօ Սասունից

Ես ուղեկցում եմ գաղթականութեան, արէք շուտափոյթ կարգադրութիւն, թէ հարկաւո՞ր է պահել արդեօք մթերքների վերահսկիչ խումբ։ Փոխադրեցէք 10,000 ռուբլի, կարիքը մեծ է։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Գեներալ Թամամշեանի. Ընկերութեանս յանձնած 19 վագոն ալիւրն ամբողջովին ստացուել է. բացի այդ Թամամշեանը Ընկերութեանս յանձնեց եւ 6 վագոն ալիւր, որ միասին լինում է 25 վագոն։

Այդ 25 վագոնից, ինչպէս յիշել ենք մեր անցեալ տեղեկագրի մէջ, Սարիղամիշ ուղարկուած է 2 վագոն, իսկ մնացած 23 վագոն ալիւրը ուղարկուած են հետևեալ վայրերը. Ագարաք՝ 3 վագոն, Ալէքսանդրապոլ՝ 2, Իգդիր՝ 3, Վաղարշապատ՝ 2, Մեծ-Ղարաքիլիսա՝ 2, Երևան՝ 3, Սարիղամիշ՝ նորից 5 վագոն, իսկ մնացած 3 վագոն ալիւրը թողնուած է Թիֆլիսում։

Պելադիադա կայարանից ուղարկուած է Ընկերութեանս Ալէքսանդրապոլի պահեստին 4 վագոն և Էջմիածին կայարանը 6, որից ըստ Ընկերութեանս կարգադրութեան Վաղարշապատ պիտի ուղարկուի 3 վագոն և Իգդիր՝ 3. Թիֆլիսի կայարանում գնուած է 1 վագոն ալիւր, որը ուղարկուած է Ալէքսանդրապոլ։

Փոթիում գնուած է 6 վագոն ալիւր, որը սպասւում է մօտ օրերումս։

Իգդիր և Վաղարշապատ ուղարկուած են երեսնական պուդ սապոն։

# Քրոնիկոն

Թիֆլիսի զինուորական գաւառապետը յայտնեց Թիֆլիսի զինուորական ատեանին, որ պահեստի զինուորների զինակոչը յետաձգուած է մինչև օգոստոսի 25ը։ Պահեստի զինուորները պէտք է հաւաքուեն ժողովատեղին երկու խմբով։ Առաջին խմբի հաւաքոյթը նշանակուած է օգոստոսի 28—30ը, իսկ երկրորդը՝ սեպտեմբերի 7—11։ Առաջին խմբի մէջ մտնում են 1902—1898 թուերին կանչուած Ա. կարգի պահեստի զինուորները. իսկ երկրորդ խմբի մէջ՝ 1916—1910 թ. կանչուած Բ. կարգի զինուորները։

Կանչուող պահեստները զինուորական գաւառապետի ատեանին ներկայանալիս՝ հետները պէտք է վերցնեն պահեստային վկայականները, իսկ կորցնողները ժամանակին պէտք է դիմեն քաղաքային զինուորական ատեանին պատճէն ստանալու համար։

⁂

Կուկիա Թաղամասում մի խումբ անձանց նախաձեռնութեամբ հաստատուել է սպառողական ընկ., որը կրում «Կուկիոյ Կօօպերատիւ» անունը։

⁂

Վրաստանի էկզարխի նախագահութեան տակ գտնուած հիւանդ և վիրաւոր զինուորներին խնամող կոմիտէն Թիֆլիսում բաց է անում արհեստանոց, ուր զինուորները սովորելու են դերձակութիւն, կօշկակարութիւն և այլ արհեստներ։

⁂

Ելէքտրաքարշի կոնդուկտորութեան համար գրուել են 80 կին, դրանցից 20ը արդէն քննութիւն են բռնել և հաշւում են իբր թեկնածու (կանդիդատ), իսկ եօթը. իբրև իսկական ծառայող, տղամարդկանց հաւասար ռոճիկ ստանալով աշխատում են արդէն։

⁂

Կովկասի ուսումնարանական շրջանի հոգաբարձու Ռուդոլֆի զեկուցման համաձայն՝ Մեծ Իշխան Փոխարքան թոյլատրեց բժշկական ճիւղ բանալ Թիֆլիսի կանանց բարձր դասընթացներին կից առաջիկայ սեպտեմբերի 1-ից։

⁂

Վրաց-Իմերէթական սինոդական դրասենեակը առաջարկութիւն ստացաւ Ռուսաց սինոդից՝ առաջիկայ սեպտեմբերի 1-ից հոգևոր սեմինարիա բանալ Քութայիսում։

⁂

Երկուշաբթի, ամսիս 15-ին, Խօջիվանքի գերեզմանատանը մի խումբ երիտասարդների նախաձեռնութեամբ հոգեհանգիստ է կատարուել երաժիշտ Մակար Եկմալեանի դամբարանի վրայ։

⁂

Քաղաքի ջրմուղու ջրի հետազօտութիւնը մինչև հիմա ցոյց է տուել, որ քաղաքի ջրի մէջ խոլերային բացիլներ չկան։

⁂

Միացեալ պետութիւնների Պետրոգրադի դեսպանի առևտրական կցորդը մօտ օրերս գալիս է Կովկաս՝ ուսումնասիրելու տեղական հանքային արդիւնաբերութիւնը և հանքերը։

⁂

Թիֆլիսի լրագրավաճառները կազմել են աշխատանքի տուն, որի կանոնադրութիւնը արդէն հաստատուած է նահանգապետի կողմից։

⁂

Թիֆլիսի ատամնաբոյժները կազմակերպել են մի կօօպերատիւ ընկերութիւն՝ «Կովկասեան ատամնաբուժական դէպօ» անունով։ Մօտ ժամանակներս ընկերութիւնը բանալու է իր պահեստը, որ հոգալու է Կովկասի ատամնաբոյժների մասնագիտական կարիքը։

Քաղաքային կենտրոնական հիւանդանոցին կից (Պուշկինեան փողոց) բացուել է հակախոլերային պատուաստումներ կատարելու բաժանմունք։ Պատուաստումը կատարուելու է ձրի՝ ցերեկուայ ժամը 2—4ը ուսուցչապետ Բարեկի խմբի բժիշկների ձեռքով։

⁂

Բժշկապետ Վիլեամ Կրեասին վերադարձել է Ալաշկերտից և մեկնում է Ամերիկա։ Առայժմ յայտնի չէ, թէ կրկին վերադառնալու է Տաճկահայաստան իւր պաշտօնատեղին—որբանոց։

# Արտաքին տեսութիւն

Գալիցիայում, Բուքովինայում, Իզոնցոյի հովտում և Սոմի ափերին դաշնակից զօրքերի ունեցած վերջին յաջողութիւնները վերջապէս խախտեցին ուժերի այն հաւասարակշռութիւնը, որ ամիսներից ի վեր հաստատուել էր Եւրոպական ռազմաբեմերում։ Եւ որովհետև շահագրգռուած չէզոք պետութիւնները այդպիսի վայրկեանների են սպասում իրենց անելիքը որոշելու համար, ուստի նրանք նորից քաղաքական աշխարհի ուշադրութիւնը գրաւեցին իրենց վրայ։

Չէզոք պետութիւնների մէջ այս տեսակէտից նախ և առաջ Ռումանիան է նկատառութեան գալիս, որովհետև նա, շնորհիւ իր ռազմական ուժերի և, որ գլխաւորն է, իր աշխարհագրական դիրքի՝ անչափ կարևոր դեր կարող է խաղալ համաշխարհային պատերազմին։ Ռումանիան գիտէր իր այդ արժէքը և ամբողջ երկու տարի խաղացնում էր շահագրգռուած պետութեանց դիւանագէտներին՝ աշխատելով մի կողմից որքան կարելի է շատ բաժին ստանալ այս պատերազմից, իսկ միւս կողմից՝ յետաձգել իր հանդէս գալը այնքան, որ իր յաջողութիւնը միանգամայն ապահովուած լինի։

Պատերազմի սկզբին, երբ ռուսները զգալի հարուածներ հասցնելով Աւստրոհունգարիային գրաւել էին Բուքովինան և Տրանսիլվանիայի մի մասը՝ Ռումանիայի հասարակական կարծիքը միահամուռ պահանջում էր, որ կառավարութիւնը յարի եռապետական համաձայնութեանը և պատերազմի դաշտը դուրս գայ։ Սակայն Կարլ Թագաւորի շրջահայեաց կառավարութիւնը չխաբուեց ռուսների ժամանակաւոր յաղթութիւններով, մանաւանդ որ դեռ ևս յայտնի չէր, թէ ինչ դիրք պէտք է բռնեն այս գործում Իտալիան ու Բուլղարիան։

Յետագայ դէպքերը միանգամայն արդարացրին այս շրջահայեցութիւնը։ Անցեալ տարուայ գարունքից սկսուեց Ռուսաստանի պարտութիւնների շրջանը և հակագերմանական զինակցութեան հմայքը միանգամայն ընկաւ Ռումանիայում։ Ընդ սմին «գերմանական օրիէնտացիան» ուժեղացաւ մինչև այն աստիճան, որ դեռ մի քանի ամիս առաջ անխուսափելի էր թւում Ռումանիայի և գերմանական դաշնակցութեան զինակցութիւնը։

Սակայն ռուման կառավարութիւնը այս անգամ էլ չխաբուեց։ Վերդէնի տակ սկսուած մենամարտը նրան մտատանջութիւն էր պատճառում, որի հետևանքին էր սպասում, որպէսզի վերջնականապէս համոզուի, որ գերմանացիների յաղթանակն ապահովուած է և ապա անցնի նրա կողմը։ Ինչպէս յայտնի է, Վերդէնը չարդարացրեց այս ակընկալութիւնը, իսկ ռուսական անգլօ-ֆրանսական և իտալական ճակատների վերջին կռիւները միանգամայն ցրեցին Գերմանիայի անյաղթութեան պատրանքը։ Զուգընթացաբար նորից ծայր տուաւ այսպէս կոչուած «ռուսական օրիէնտացիան»։ Այս նոր տրամադրութիւնից կարողացաւ օգտուել քառապետական համաձայնութեան դիւանագիտութիւնը և զանազան հատուցումների խոստումներով ու բուլղարական վտանգի ցուցադրութեամբ վերջնականապէս քաշեց Ռումանիային իր կողմը։ Ամսոյս 13-ին ռուման կառավարութիւնը պատերազմ յայտարա-

բեց Աւստրօ-Հունգարիային, իսկ 15-ին մարտակոչ ընդունեց Գերմանիայից։

Այսպիսով երկու տարուայ յամառ դիմադրութիւնից յետոյ ռումանական սֆինքսը պարզեց իր դէմքը։

Ռումանիայի հանդէս գալը աւելի մեծ նշանակութիւն ունի Քառեակ Համաձայնութեան համար, քան թէ ունեցաւ Բուլղարիայի հանդէս գալը միջին-Եւրոպական զինակցութեան համար։ Վերջինս մեծ կորուստներ պատճառեց դաշնակիցներին։ Նրա շնորհիւ՝ Գալիպոլու ձեռնարկը վիժեց։ Սերբիան գրաւուեց, Տաճկաստանը վերակենդանանալով Կովկասեան ճակատում նոր դժուարութիւններ հանեց Ռուսաստանի դէմ և այլն և այլն։ Բայց այս բոլոր անյաջողութիւնները ժամանակաւոր բնոյթ ունէին. Նրանք շատ-շատ մի քանի ամսով յետաձգեցին դաշնակիցների գործը։ Մինչդեռ Ռումանիայի հանդէս գալը կարելի է ասել անդառնալի որոշում է Գերմանիայի պարտութիւնը։ Բացի Աւստրօհունգարիային հարաւային կողմից հասցնելիք հարուածից և Բուլղարիայի թիկունքում առաջ բերելիք օրհասական բարդութիւններից, որ Ռումանիայի հանդէս գալու անմիջական հետեւանքը պէտք է լինին՝ նա մի կողմից ստիպելու է Յունաստանին կամ յարել Քառեակ Համաձայնութեանը և կամ անպայման բարեացակամ չէզոքութիւն պահպանել։ Իսկ միւս կողմից՝ Գերմանիայի պարենաւորման գործին սոսկալի հարուած է հասցնելու՝ փակելով նրա առաջ ռումանական, թերևս նաև ռուսական հացի շտեմարանները։

Ռումանիայի զօրքը ըստ ինքեան վերցրած մեծ չէ, ընդամէնը 800,000 մարդ կամ մօտ կէս միլիոն մարտիկ. 1000-ի չափ թնդանօթով։ Սակայն ներհակ ուժերի ներկայ յարաբերութեան մէջ այդ զօրքը ահագին նշանակութիւն է ստանում, մանաւանդ որ նրա սպառազինութեան և պարենաւորման վրայ վերջին երկու տարուայ ընթացքում մեծ աշխատանք է գործ դրուած։

—

Այս շաբթուայ երկրորդ նշանաւոր քաղաքական դէպքը Իտալիայի և Գերմանիայի միջև յայտարարուած պատերազմն է։ Մի տարուց աւել է այս երկու պետութիւնները խզելով դիւանագիտական յարաբերութիւնները՝ իրար դէմ բացայայտ դաւեր են լարում, բայց—միջազգային կեանքում հազուագիւտ մի երևոյթ—կարիք չէին զգում պատերազմի դուրս գալու։ Պատճառն այն է, որ այս իւրատեսակի «խաղաղութիւնը» երկու կողմի համար էլ որոշ նկատումներով անհրաժեշտ էր։ Գերմանիան, որպէսզի ժամանակ ունենայ Իտալիայում տեղաւորած իր հսկայական կապիտալները ազատել և մէկ էլ որպէսզի արտաքին առևտրի մի բաց դուռն ունենայ՝ չտեսնելու էր տալիս Իտալիայի արարքները միջին-Եւրոպական զինակցութեան դէմ։ Իտալիան էլ, որպէսզի յարաբերութիւնների յանկարծակի խզումով տնտեսական տագնապ չառաջացնի Գերմանիայի հետ բազմաթիւ առևտրական կապերով կապուած իր երկրի մէջ և ժամանակ վաստակի Ֆրանսիայի ու Անգլիայի հետ տնտեսական նոր կապեր հաստատելու՝ արգելք չէր հանդիսանում երկու երկրների առևտրական յարաբերութիւններին։ Այս դրութիւնը դիւրանում էր շնորհիւ այն հանգամանքի, որ Իտալիան ու Գերմանիան ընդհանուր սահմանագիծ չունենալով՝ սահմանագլխային պատահարներից (ինցիդենտներից) ազատ էին։

Սակայն այս դրութեան Իտալիայի դաշնակիցները, և մանաւորապէս Անգլիան, ձեռնտուօրէն հաշտուել չէին կարող։ Նրանք չէին կարող մարսել, որ իրենք Գերմանիային տնտեսապէս ճնշելու նպատակով կաշուից դուրս են գալիս նրա արտաքին առևտուրը խափանելու, իսկ իրենց դաշնակից Իտալիան այդպիսի առևտրի հնարաւորութիւն էր ընձեռում նրա համար։ Եւ Պարիզի տնտեսական համագումարը (կոնֆերանսը) վերջ տուաւ այս դրութեանը՝ պարտաւորեցնելով Իտալիային Գերմանիայի առևտրի դէմ կայացած բոլոր որոշումների տակ ստորագրելու։

Այնուհետև Գերմանիայի և Իտալիայի յարաբերութիւնները սրուեցին։ Անցած յունիսից սկսած երկու երկրներում էլ մի շարք կարգադրութիւններ եղան, որոնցով նրանց միջի առևտուրը իրապէս անհնարին էր դառնում։ Այլևս նախկին դրութիւնը պահպանելու ոչ մի տեղիք չկար, մանաւանդ որ այդ նեարդայնացնում էր թէ Իտալացի ժողովրդին և թէ դաշնակիցներին։ Եւ ահա Իտալիան, ամսի 14-ին Զուիցերիոյ կառավարութեան միջոցով պատերազմ յայտարարեց Գերմանիային։

Այս նոր գործը առայժմ առանձին հետևանքներ չի ունենայ ռազմական տեսակէտից, որովհետև, ինչպէս ասացինք, Իտալիան և Գերմանիան շփման անմիջական գծեր չունին։ Սակայն առաջիկայում, երբ Ռումանիոյ և Ռուսաստանի օգնութեամբ Իտալիան կխորտակէ Հաբսբուրգեան միապետութեան ոյժը՝ իր ազատ ուժերը Ֆրանսիա և Սալոնիկ տեղափոխելով՝ մեծապէս կարող է նպաստել Գերմանիայի դաշնակիցների գործին։

Այսպիսով մենք տեսնում ենք, որ պատերազմի ասպարէզը երկու տարուայ ահեղ ոգորումներից յետոյ փոքրանալու փոխարէն մեծանում է և մարդկութեան համար արիւնհոսութեան նոր վայրեր են բացւում։ Բայց այս նոր սարսափները մեզ այլևս չեն շուարեցնում, որովհետև համաշխարհային պատերազմի շուտափոյթ վախճանի երաշխիքն են պարունակում։

Ա. Ջ.

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Այս վերնագրով հետևեալ յօդուածն է հրատարակել Բ. Վերմիշեանը Рѣчь-ի 215 համարում.

«Տաճկաստանի հետ Ռուսաստանի ունեցած պատերազմի շընորհիւ թիւրքահայերը այրեցին իրենց բոլոր նաւերը Թիւրքիայի նկատմամբ և ձգտեցին դէպի Ռուսաստանը, իբրև իրենց ազատարարին, յանձնելով Ռուսաստանի ձեռքը իրենց ամբողջ ճակատագիրը, առանց մտածելու, թէ որպիսի սարսափելի վրէժխնդրութեամբ կը պատասխանեն թիւրքերը թիւրքահայերի անդառնալի ռուսական ուղղութեան (օրիէնտացիա)։

«Այս հանգամանքը հարկադրում է ռուս հասարակութեան ուշադրութեամբ հետևելու, թէ ինչ է գործւում Թիւրքաց Հայաստանում։

«Թիւրքահայերի կեանքից երկու իրողութիւն արժանի է առանձին ուշադրութեան։

«Рѣчь»-ի № 205-ում «Колонизація турецкой Арменія» յօդուածում պատմուած էր փախստական թիւրքահայերին իրենց հայրենիք՝ Ալաշկերտի, Բայազիդի, Դիադինի և մասամբ էլ Բասենի հովիտները վերադառնալու արգելման մասին, եթէ միայն նրանք չունին վաւերաթղթեր այն հողերի, որոնց վրայ հաստատուելու համար կը ցանկային վերադառնալ։ Փախստականները, ինչպէս յայտնի է, յանկարծական սարսափի տակ փախել են կոտորածից, թողնելով ճակատագրին իրենց ամբողջ ստացուածքը, գցելով ճանապարհին մինչև իսկ իրենց կանանց և զաւակներին… Ո՞րտեղ կարող էին մտածել վաւերաթղթերի մասին։ Այդ հովիտների հողերը նշանակւում են նիրքին գաղթավայրեր հիմնելու համար. իսկ նրանց, ովքեր դարեր շարունակ ապրել են այդ հովիտներում, ռոգելով իրենց մայր հողերը տասնեակ սերունդների քրտինքով և արիւնով, ովքեր թողին իրենց հարազատ օջաղները է իրենց ազատարարի—Ռուսաստանի սիրոյ համար, ովքեր տուել են նրան ամեն ինչ, որ կարող էին տալ՝ իրենց գոյքը, իրենց կեանքը, այդպիսիների համար տեղ չկայ այլևս իրենց հայրենիքում…

«Երկրորդ իրողութիւնը.

«Քրդերի հետ միասին սառուածավախ թիւրքերի կատարած անասելի կոտորածի ժամանակ Տաճկահայաստանում թիւրքերն և քրդերը գերել են բազմաթիւ հայ կանայք և երեխաներ։ Ի՞նչ

կերպ վարուեցին նրանք այդ դժբախտ, երկիւղից և վշտից խելագարուածների հետ,—ճիշտը ոչ ոք չգիտէ։ Պինդ պահպանում են առայժմ այդ գաղտնիքը Թիւրք հարեմի բարձր պատերը։ Սակայն աստիճանաբար պարզւում է, որ Թիւրքական տներում պահուած այդ հայերը մահմեդականացած են և ենթարկուել են խակական ստրկութեան ամենատեսակ խայտառակ, ամօթալի բռնութիւնների, աւելի մռայլ, քան այն, որ մենք մատաղ հասակում զգացել ենք, կարդալով Բիչեր-Ստոուին։

«Բայց ահա մեր քաջարի զօրքերն աստիճանաբար տիրում են այն երկրին, ուր տեղի են ունեցել շատ օրերի ընթացքում «բարթուղիմեան գիշերներ»։ Մահմեդական ազգաբնակութեան մի մասը մնաց մեր զօրքերի տիրած իրենց բնակավայրերում, յայտնելով Ռուսաստանին իրենց հպատակութիւնը։ Մի մի տեղ կենդանի մնացած հայերը, նմանապէս և նրանք, ովքեր ականատես են եղել կոտորածին, հաղորդել են տիրապետած շրջանների վարչութիւններին, որ բոլոր «գեաւուրների» համար ամուր փակուած Թիւրքական տներում գերութեան մէջ տանջւում են հարիւրաւոր հայ կանայք և երեխաներ, որ հարկաւոր է նրանց փրկել այդ գերութիւնից՝ թէկուզ յանուն պարզ մարդասիրութեան։

«Արդեօք այդ գերուածներն ու բռնի կերպով մահմեդականացրած հայերը նոյն «անմեղներից» չեն, որոնք արդէն «գըժբախտութեան մէջ» են և որոնց պաշտպանութեան համար պէտք է ոտքի կանգնի այն Ռուսաստանը, որ գնում է «ամենամեծ ողորմութիւնն» անելու։

«Այդ հարցին ոչ ոքի սիրտը ընդունակ չէ տալու այլ պատասխան, քան այն, որ քրիստոնեայ Ռուսաստանի առաջին գործը պէտք է լինի այն երկրում, որ պատերազմով կորզուած է կիսալուսնից, անմիջապէս ազատել, ինչ գնով ուզում է լինի, մահմեդականների ձեռքում իբրև ստրուկ տանջուող բոլոր քրիստոնեաներին։

## ԻՏԱԼԱՑՈՑ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ



### Գ.

### ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՏՈՐԱԾԸ

Հայոց հարցը լաւ ուսումնասիրած մի հրապարակախօս, Virginio Gayda, նրա մի լուրջ և ամենակողմանի պատմականն անելուց յետոյ հետևեալն է գրում «La stampa» հանդէսի 1916/IV համարում։

«Հայոց մոռացուած հարցը նորից մէջ տեղ եկաւ։ Ասիայի այս փոքրիկ քրիստոնեայ ժողովուրդի մարտիրոսութիւնը՝ որ Եւրոպայի սահմանների մօտ մահմեդականների, քրդերի և պարսիկների մէջ տեղ պահապան է եւրոպական քաղաքակրթութեան և նրա հանճարին՝ աներևութացել էր համաշխարհային պատերազմի փոթորկին մէջ։ Այժմ երբ Էրզրումը, Բաղէշը*) գրաւուած են, ռուս բանակների ձեռքումն է ամբողջ Մեծ-Հայքը։

Այդ տեղերի մահմեդական բնակչութիւնը փախուստի է դիմել։ Սեբաստիան արդէն թողնուած է և հարիւր հազարաւոր փախստականներ լցուել են Փոքր Ասիայի սիրտը՝ Անգորա, ութսուն հազար Կոնիա։ Բայց հայոց տները թափուր են։ Ամբողջ մի ժողովուրդ որ լռիկ սպասում էր իր ազատութեան և որի մօտենալը զգում էր, չափազանց ուշացած, գետին տապալուեց եղերական մահով։ Եւրոպական պատերազմի սպանդանոցին և ահաւոր պատմութեան մէջ չկայ դէպք՝ աւելի ահռելի քան հայկական կոտորածը, որի մասին դեռ ևս նոր նոր հասնող վաւերագրեր սկսում են մի քիչ լոյս սփռել։ Մարդիկ ուզելով լուծել Հայոց հարցը, բնաջնջել են հայերը։ Ողբերգութիւնը ամեն կարելի ենթադրութիւնից վեր է և սարսափելի։ Ես, հիմնուելով այն փաստաթղթերի վրայ, որոնց ես ստացել եմ ուղղակի և առաջին ձեռքից, կարող եմ տալ այս տեղ, Եւրոպայում դեռևս անյայտ, առաջին նկարագրութիւնը»։

Յարգելի հրապարակախօսը սկսելով այստեղ հայ ողբերգութեան պատմականը Բեռլինի վեհաժողովի օրերի դէպքերից մինչև 1909-ի Ադանայի թրքական գիշակերութիւնը, մի վայրկեան ընդմիջում է խօսքը և անում է Հայ-Ռուսական յարաբերութիւնների մի համառօտ տեսութիւն՝ սկսած Պետրոս Մեծից մինչև Վարանցով-Դաշկովի փոխարքայութեան վերջին օրերը։

«Բալքանեան պատերազմի վերջանալուն հետ Ռուսաստանը Կ. Պոլսում յարոյց Հայոց հարցը։ Ռուսաստանը Թիւրքիայում միշտ բաց հարց է ունեցել, որպէսզի ամեն ուզած վայրկենին կարողանայ Թուրքի գործերին միջամտելներն արդարացնող մի պատճառ ունենայ։

Հայոց հարցն էլ Ռուսաց բաց թողած աւանդական հարցերից է։

Դեռևս 18-րդ դարու սկզբներից Պետրոս Մեծը Մերձաւոր Արևելքում դէպի հարաւային ծովերն առաջնորդող մի նաւահանգիստ ձեռք բերել ուզելով՝ հասկացել էր որ այս իր ծաւալուել ձգտող քաղաքականութիւնը—որը ապա հաւատարմութեամբ պահպանեցին իր բոլոր յաջորդները—գլուխ բերելու համար հարկաւոր էր Հայերի աջակցութիւնը։ Պետրոս Մեծը Կասպից ծովի եզերքներում միւսիլմաններից ձեռք բերած նաւահանգիստներում բնակեցնելով հայերին՝ պատրաստւում էր նրանց միջոցաւ յարաբերութիւններ ստեղծել Պարսկաստանի նրանց ցեղակիցների հետ, երբ ահա մահը հասաւ և նրա մեծ ծրագիրների իրագործումն էլ առժամանակ ընդհատուեց։

Բայց Եկատերինա Բ.-ը շարունակեց այդ քաղաքականութիւնը։ Թիւրքիայի հետ սորա պատերազմները մինչև Քիւչիւկ-Քայնարջու դաշնագրութիւնը (1774) այն արին, որ Ռուսաստանը ստացաւ արևելքի քրիստոնեաների պաշտպանի իրաւունքը։ Այդ օրուանից ահա մարդասիրութեան մի դրօշակի տակ, որ պահանջում էր Հայերի ազատագրումը, Ռուսաստանն առանց այլ ևս շեղուելու հաստատուեց Թիւրքիայի և Պարսկաստանի վրայով դէպի արևելք և ազատ ծովը շարժուող դանդաղ յառաջխաղացութիւնը։

Այնուհետև շատ սխալներ գործուեցին։ Ռուսաստանում ազատամիտ հայերի հալածանքը, Կովկասում նրանց հարևանութեան մէջ ապրող միւս ազգերի հետ թշնամացնելը. մի խօսքով յետադիմական քաղաքականութիւնը, բայց վերջին տասնամեակում շնորհիւ Փոխարքայ Վարանցով-Դաշկովի իմաստուն վարչութեան կարգը վերահաստատուած էր և Կայսերական կառավարութիւնը աւելի համբերատար դարձած առաջ էր գնում՝ ամեն օր աւելի ու աւելի գրաւելով հայերի համակրութիւնը։

Եւրոպական ներկայ պատերազմի նախօրեակին Ռուսաստանը Հայոց հարցի շուրջը սկսել էր եռանդուն դիպլոմատիկ գործունէութիւն։»

Գ. յօդուածագիրը այստեղ ամենին ծանօթ Հայաստանի բարենորոգումների Աբդիւլ-Համիդի անիրաւ, հալածող վարչութեան օրով հայերից բռնի գրաւուած հողերի առհասարակ հայ երևելի հարցի գլխաւոր պահանջների մի թւում անելով, յիշում է թէ ինչպէս, երբ Անգլիան և Ֆրանսիան հենց սկզբից Ռուսաստանի կողմը բռնեցին, ապա Աւստրիան և Գերմանիան Թուրքաց կողմը, Իտալիան, մի կողմից իր դաշնակիցներին դէմ չլինելու, միւս կողմից էլ բնաջնջուելու դատապարտուած մի փոքրիկ քրիստոնեայ ժողովուրդին պաշտպանութիւնը արհամարհելը ամօթ սեպելու վարանքի մէջ մնացել էր։ Ապա գաբինէտների մէջ բանակցութիւնները և ի վերջոյ Կ. Պոլսում դեսպանների թարգմանների ժողովը որ ութ նիստ ունեցաւ և որի ժամանակ Ռուսաց պատուիրակ Մանդլշտամի ծրագրի

*) Աւելացնել նաև Երզնկա, Տրապիզոն։ Ա. Ֆ.

և նրա դէմ հանուած Գերմանիայի ծրագրի արանքը գալիս մտնում է մեծ վէզիրի անորոշ և քաղցրախօս գեղեցիկ բառերով լիք ծանուցագիրը (նոտան), որով Թուրք կառավարութիւնն էլ իրանն էր ասում։ Հուսկ ապա մի համաձայնութեան գալիքն բարենորոգութիւնների ծրագրէն Թիւրքիայի կողմից ընդունուելն, եօթն վիլայէթների երկու խմբի բաժանուելը և նրանց իւրաքանչիւրի մի մի ինսպէքտորի հսկողութեան յանձնելու որոշումը, երկար բանակցութիւններից յետոյ այդ երկու հսկիչների ընտրուելը, հրաւիրուելը և վերջապէս սրանց իրանց պաշտօնատեղին հասնելուն հետ միաժամանակ եւրոպական պատերազմին պայթելը, որից յետոյ Հայաստանի բարենորոգութիւնների մասին էլ խօսք չեղաւ։

«Բայց և այնպէս հարցը մնում էր։ Ահա այստեղ է ժողովուրդին ճակատագիրը։ Եւրոպական կռուին հէնց սկզբից Հայերը ինչպէս լեհերը չթաքցրին իրենց համակրութիւնը դէպի Ռուսաստանը։ Թիւրքահայերի և Ռուսաստանի մէջ արդէն վաղուց (? Ա. Ֆ.) գոյութիւն ունէին համաձայնութիւններ, որոնց մասին անտեղեակ չէր Թիւրքիան։ Հայերը իրաւականի ճարտարամիտ և մանուածապատ իմացականութիւնով հիանալիօրէն մտացի մարդիկ են։ Սա այն ժողովուրդն է, որի զաւակներն են եղել երկար տարիներ այն անյայտ քարտուղարները Թիւրքիայի արտաքին գործոց նախարարութեան դիպլոմատիկ համարեա բոլոր ծանուցագրերը (նոտաները) երկարատև տարիների ընթացքում խմբագրել են։ Պատերազմից առաջ էլ հայերը մի քիչ չափից աւելի խօսում էին։

Ապա իրենց յեղափոխական գործունէութիւնն էլ բաւականին բացառիկ կերպով էր լինում։ 1896-ին Կ. Պոլսում այդ յեղափոխութիւնը ռումբերով յայտնի էր դարձել։ Թէ արտասահմանում և թէ Ռուսահայ սահմանների վրայ գաղտնի կազմակերպութիւնների ակումբները բոլորին յայտնի էին։ Թրքահայերի մէջ ռուսական պրոպագանդան աւելի գրգռիչ էր, քան Գալիցիայի Ռուտէնների մէջ, և որը յայտնի օգնում էր հայ դիմադրութեան բոլոր տարրերին։ Այս ամենը պէտք էր արդէն Հայերի դէմ ամբաստանութեան եզրներ հաշուելու»

1914-ի նոյեմբերին Թիւրքիան պատերազմի մտաւ Ռուսաստանի հետ։ Նրա շուտով և Թափով սկսած գործունէութիւնը Կովկասեան ճակատի վրայ ղեկավարում էին գերմանացի սպաներ։ Գերմանացիք լաւ էին ճանաչում այս երկրամասը։ Գերմանացիք պատերազմից առաջ էլ Ռուսիայում ինքզինքերն զգում էին այդ երկրի երկրորդ տէրերի պէս։ Գերմանացի սպաները ամէն տարի որսորդ ճանապարհորդի դիմակի տակ ծպտեալ անցնելով Ռուսաստան, գնում էին մինչև պարսից և Թուրքաց սահմանները։ Եւ այն շրջաններից, ուր հաստատուած էին գերմանական հզօր գաղութներ, նոքա անցուդարձին հանդիպում էին Թուրք շտաբի սպաների հետ և աշունքը գալուն հետ մեկնում էին, թողնելով իրանցից միշտ մէկին, երկուսը իբր խաղաղ և որսի սիրահար մարդ և որին ընկերները խնդրել էին, որ հոգս քաշի առաջիկայ տարուան որսի պատրաստութիւնների մասին։

Այս ամենամեայ կանոնաւոր շարժումները թէև աչքից չէին վրիպում, բայց նրանց իսկական նպատակը ռուսները հասկացան միայն պատերազմն սկսուելուց յետոյ։ Այժմ, երբ նոր փաստաթղթեր են ձեռք բերուել, էլ կասկած չի մնում, որ Գերմանիան երկար ժամանակից իվեր պատրաստել էր Կովկասեան ճակատին վրայ Թուրքաց ուժերով մի յարձակում։ Եւրոպական պատերազմի բռնկուելուն առաջին օրից արդէն ակներև էր, որ Թիւրքիան Գերմանիայի կողքին պատրաստ էր։ Այդ Թրքաց ուժերի ղեկավարութիւնը իւր ձեռքն առած գերմանական հրամանատարութեան ճշտապէս յայտնի էր նաև հայերի մտերիմ զգացումը։ Չնայած սակայն, նոցա գործողութիւնները հետզհետէ երևան եկան։ Թուրքական բանակն աջողելով անցնել Ճորոխը մտաւ ռուսական հողն։ Բայց ահա մէկ էլ էնվերն է որ երևում է պատերազմի ճակատում։ Նա ասում է. «Գերմանացիք չեն ըմբռնում կացութեան որպիսութիւնը և իզուր ժամավաճառ են լինում»։ Եւ ինքն վերցնելով Սարիղամիշի ճակատի վերին հրամանատարութիւնը, սոսկալի ջարդ է ուտում։ Այսօր ճշտօրէն պարզուած է, որ Թիւրքերը այդ կռւում կորցրին մէկ և կէս կորպուս, ինչ որ հաւասար է 50,000 հոգու։ Ապա երբ վրայ հասաւ ռուսների կողմից Վանի գրաւուելը, Թիւրքերը սկսում են բոլոր ձախողուածի պատճառ յանցաւորին փնտռել։ Յանցաւորը դուրս է գալիս իբր հայ ժողովուրդը։ Նկատուել և թէ ինչպէս Սարիղամիշի պատերազմի ժամանակ յանկարծ որտեղից ուր Թրքաց Թիկունքում ասպարէզ ընկան հայ կամաւորների դրօշակներ և Թրքաց բոլոր գաղտնի համարուած ծրագիրները շնորհիւ տեղացի հայ ազգաբնակչութեան հարիւրաւոր նուրբ և աննկատելի թելերի միջոցաւ իսկոյն յայտնի դարձան։ Սրա նման մի բան էլ Աւստրիացոց Թիկունքում, Գալիցիայի ռուտէնների մէջ նկատուեցաւ ռուսաց սկզբնական յաղթական յառաջխաղացման օրերում։ Վանում նոյնը կրկնուեց։ Հայ զինուած խմբեր առաջնորդելով ռուսներին՝ իրանք առաջինը մտան քաղաք։ Հայ լրտեսութիւնը անտես էր ամէն տեղ։

Այս միևնոյն ժամանակ Կ. Պոլսում էլ «Միութիւն և Առաջադիմութիւն» կուսակցութեան աչքին կասկածելի Թուաց յեղափոխական օրինաւոր ճանաչուած մի կուսակցութիւն, որի ղեկավարն էր Թիւրք պառլամենտի անդամ Գրիգոր Զօհրաբը։

Այս ամենը նորութիւն չէ։ Դեռ ևս 1828-ին Թիւրքիայի հետ պատերազմի ժամանակ ռուսները, ասում է Պասկևիչը, «հայերի մէջ գտան քաջութեամբ լի և գործունեայ դաշնակիցներ»։ Հայերը այն ժամանակ էլ յաջողեցրել էին կազմակերպել մի փոքրիկ բանակ ռուսաց հետ Թիւրքի դէմ կռուելու համար։ Այդ լռելեայն դաշնակցութիւնը կրկնուեցաւ և 1878-ին, երբ հայերը օգնում էին ռուսներին մի կողմից զէնքով, միւս կողմից բաւարարելով ինդենդանտի կարիքներին, ուրախութեամբ ընդունելով Թղթադրամը փոխանակ ոսկու։ Այն ժամանակ Թիւրքաց կառավարութիւնը միայն պատերազմից յետոյ իւր վրէժն առաւ հայերից գլխաւորաբար Բայազիդի շրջանում։ Իսկ այս անգամ չուզեց սպասել։ Թիւրքը կարծեց որ իւր բանակների ձախողուածի մէջ միակ մեղաւորը հայն է և դատապարտեց հային։ Թիւրք և Գերմանացի վարիչներ, որ միաժամանակ ընդհարւում էին իրար հետ, անաջողութիւնների մասին իրար ամբաստանելով փոխադարձ ինքզինքներն արդարացրին բոլոր պատասխանատուութիւնները քցելով հայերի վրայ։ Ահա այսպէս սկսած հայերի հալածանքը անլսելի մնաց եւրոպական պատերազմի շռինդին մէջ։

## ՕՏԱՐՈՒՀԻ ԻԼԷՆ ՈՒ ՄԻԼԷՆ

### (ԲԱՂԷՇԻ ԱՄԵՐԻԿԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ՀԻՄՆԱԴԻՐ ԵՐԿՈՒ ՔՈՅՐԵՐ)

Գործեր կան, այնչափ վեհ նպատակով, որ բարեպաշտական երկիւղածութեամբ, գերելու չափ, պարարում են մարդուս էութիւնը և որոնց առաջ, խորհրդաւոր լուռ պատկառանքը միակ հնարաւոր արտայայտութիւն է։

Այդպիսի նուիրական գործերի առաքեալուհիներից էին Միս Իլէն և իւր կրտսեր քոյր Միս Միլէն։

Միս Իլէի ողբերգական մահը բարոյական պարտք դրեց ուսերիս՝ Բաղէշում նրանց գործունէութիւնը երևան բերելու հասարակութեան առաջ։

Բաղէշը բարբարոսութեան մայրաքաղաք է եղած ժամանակներից ի վեր... Կարմիր սուլթանները խժդժութիւններ կատարել են այնտեղ հայերի վերաբերմամբ։

Հայ հասարակութիւնը, Թուրք փողոտումներից ընկճուած, փախչում էր սարսափահար ու յուսահատ, շունչը սապնջակալ

Ամերիկա անելու—արդարատենչ մարդկութեանը դժոխքի խակութիւնը պատմելու համար։

Բաջալերիչ յոյսերով երկու իշխանազուն քոյրեր, պալատական գահաւորակներից հրաժարելով խրոխտ ու ինքնավստահ եկան սարսափելի կացութեան բարոյական յեղաշրջում անելու։

Ընթանալի ուղին, կուլտուրական անխոնջ, յամառ ու պազարիւն աշխատութիւնից սկսելով, մի փոքրիկ աղօթատուն-ժողովարանի հետ ձեռնարկեցին շինել երկսեռ գիշերօթիկ որբանոց-դպրոցի պատկառելի շէնքը։

Բարբարոսութեան ներկայացուցիչները այդ բարեպաշտ ծառայութիւնները, մարդասիրական խանդաղատալից գուրգուրանքները վնասակար գործեր էին յայտարարում, քամահրոտ իժային քրքիջներ էին արձակում տեսնելով որ երկու պարկեշտ ուխտաւորները, հայ գեղջուկի կողոպուտ շալակած, հող են թափում հայ մշակի հետ լուսաւորութեան վառարան-դպրոցի շէնքը շինելու համար։

Անհատական գերագոյն ջանքերի հետ, չէին խնայել և նիւթական զոհողութիւններ ալեկոծուող Հայերի կեանքի փրկութեան համար։

Վերջացնելով դպրոցի շէնքի կառուցումը, սրտի բերկրալի թրթռումներով, երկու քոյրերը անձամբ շրջում են շրջակայ հայ գիւղերը և հաւաքում որբուհիներ որբանոցի համար և շատ հոգսերից զատ նրանց կրթութեան գործն էլ իրենք են տարել, որպէս հասարակ վարժուհիներ։ Հենց սկզբից ունեցան աւելի քան 250 աշակերտ-ուհիներ և հետզհետէ գրաւելով սատարողների մարդասիրական տրամադրութիւնները, դպրոցին կից բանում են և ոստայնանկութեան, մանխայագործութեան և կօշկակարութեան արհեստանոցներ։ Արուարձաններում էլ բանում են երկսեռ տարրական դպրոցներ։

Երկու քոյրերը ամեն տարի 2—3 անգամ շրջում էին գիւղերը, տառապանքի ովկեանում յոյսի ու հաւատքի կայծեր արծարծելու, հոգեկան մխիթարութեան ու անվկանդ տոկունութիւն ներշնչելու համար։

Մայր էին ամեն մի պատահող գրկեալին, առանց ազգի ու կրօնի խտրութեան։ Իրենց փայփայանքները սպեղանի էին վիշտ ու խոցերի. լուանում էին ոջլոտած գլուխները իրենց որբ սանիկներին ու պատահող կարօտեալի։ Միս Իլէն հայ հասարակութիւնից մայր՝ իսկ թուրք քուրդ խուժանից «անա» (մեծ մայր) անբաժան տիտղոս ունեցաւ։

Միս Միլէն արդէն 13 թուին Խարբերդում կնքած էր իր մահկանացուն և վերջին փորձութիւնները թափւում էին Միս Իլէի գլխին, որ թէև տկար, բայց ամբողջ շաբաթներով սենեակի պատուհանն էր նստում և այդտեղից կառավարում դպրոցը։

Վերջին կոտորածին Բաղէշի ջարդը աշխարհի ամենաահաւոր դրամաներից մէկն է եղած։ Ամբողջ հայ ազգաբնակութիւնը յօշոտելուց յետոյ՝ արիւնարբու դահիճները յարձակւում են Ամերիկեան դպրոցի վրայ և Միս Իլէի նախապէս դիմումներին ու հոգեյոյզ թախանձանքներին հակառակ կատարում են իրենց ոճրագործութիւնը անմեղները կոտորելով և ամեն ինչ քարուքանդ անելով։

Միս Իլէի պատուհանից, այս անգամ, մանկական ծլըլոցի և հոգեպարար հեշտաբար հոգևոր մեղեդիների տեղ՝ փշաքաղող ճիչեր, հոգեխարշ մղկտումներ, հեծկլտումներ ու հոգեվարքի զարհուրելի հնչիւններ էին լսում։

Խելակորոյս սարսռահար տեսարաններով՝ բնազդօրէն օգնութեան շարժումներ էր անում, իր բերանից երբէք չլսուած անէծքի ու նզովքի տարափ էր թափում, վազվրտում էր անգիտակից, բայց իզուր... երախտագիտութեան փոխարէն աւելի անագորոյն հարուածներով էր պատասխանում։

Եւ գրկեալներին օգնող այդ քնքոյշ օտարուհին չը կարողանալով դիմանալ թիւրքական գազանութեանց ու սարսափների տարողութեանը՝ մեռաւ Հայ որբիկների և այնքան փայփայած երազների սէրը սրտում վառ պահած....։

Խորին երախտագիտութեամբ խոնարհւում ենք մեր մեծ Քրոջ անյայտ գերեզմանին առջև և մի քիչ հովացնում մեր սրտերը՝ որ նրա նման օտար զաւակներ Հայ ժողովուրդի ծանր բեռը կիսեցին և նրա հետ միասին մարտիրոսացան։

Տ. Շահբազ

# Գ ե ղ ա ր ո ւ ե ս տ

## (ՓՈՔՐԻԿ ՌՈՒԶԱՆ ԲԱԲԱՄԵԱՆԻՆ)

Պայծառ ես դու այն լուսաբեր աստղի պէս
Ու մայիսեան վարդի նման անմեղ, հեզ.
Փայլն աչերիդ՝ շողն արևի սև ծովում,
Քո արցունքով իմ հոգին ես վրդովում...
Քեզ տեսնելով յիշում եմ ես այն մանկան՝
Քեզ պէս պայծառ, քեզ պէս սիրուն, գովական.
Նրան խլեց մի փոթորիկ ոխերիմ,
Ծաղիկ կեանքով նա վաղ գրկեց ցուրտ շիրիմ.
Փակեց աչերն՝ աչերիդ պէս սևորակ
Ու դալկացած նրա այտեր կարմրորակ...
Քծղցր մանուկ, այս վշտի ծով աշխարհում
Մեզ ծննդեան տխուր օրից ալիքներն են պաշարում...
Թող գահավէժ ալիքների ծոցի մէջ
Քեզ երջանիկ աստղը շողայ՝ միշտ անշէջ,
Եւ ճեղքելով ուռած ալիք փրփրադէզ
Երջանկութեան նաւահանգիստ դու հասնես...
Ու տեսնելով քեզ միշտ ազատ փորձանքից՝
Թող այն մանկան կարօտն առնեմ քեզանից...

*
* *

Թռչում է հոգիս դէպի վէս գագաթ՝
Երկինք բարձրացած—հպարտ, ձիւնապատ.
Նա արքայական պսակը գլխին
Իշխում է բարձրից համուր աշխարհին.
Եւ մարդիկ կարծես ճիճուներ ողորմ՝
Եռուզեռումով վխտում են չորս կողմ։
Թռչում է հոգիս նանիր կեանքից վեր՝
Ազատ, անկաշկանդ փոթորկին ընկեր.
Ճիճուների մօտ՝ մութ ստորոտում
Վերից յաղթական երգս է որոտում...

Յարութիւն Պետրոսեան

# Գրական-Պատմական

## ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ *)

## Ա Ր Ե Ա Ն Ջ Ո Ր Ը

Բ. [1]

Կէս օրը կոտրել է։ Ջանձրոյթը խառնուած յոգնութեան հետ՝ տանջում է մեզ։ Դեռ ձորի կէսը հազիւ ենք կտրած։

* Տես «Համբաւաբեր» № 33։

[1]) Այս շարունակութիւնն է „Համբաւաբերի" № 32-ում տպագրուածի, որ սխալմամբ ուշացել է հետևեալ համարում տպագրուելու։

Ծանօթ. Խմբ.

*Բաժանուելով միրոնցից, մի ընկերոջ հետ խօսքի բռնուած, շտապեցնում եմ քայլերս, որպէսզի մի որևէ հով տեղ ճարեմ հանգստանալու։*

*Ցանկարծ մեր ետևի կողմից գոռացին մի քանի հրացաններ, որոնց յաջորդեց մի ուժգին և շարունակական համազարկ… Գնդակներից մի քանիսը դէպի մեզ ճամբայ առած սուլեցին շչալով…*

*Այլայլած իրար ենք նայում։ Ձայնը բաւական հեռուից է գալիս. հրացանների ծուխն ու կրակը վերևի բարձրութիւններից է երևում։*

*Սակայն Ղոլտի կնոջ պէս արձանանում ենք մի վայրկեան՝ երբ ուշք ենք դարձնում այն փոշու թաթառին, որ բիւրազան աղիողորմ ձայներով շաղախուած՝ դէպի երկինքն է բարձրանում… Մի քանի քայլի վրայ ոչինչ չի տեսնւում այդ փոշու ամպերից զատ. արեգակն իսկ խաւարում է մեր գլխին։*

*Տէր Աստուած, էն ինչ օրհասական հաւարներ էին, ինչ մրմռագին վայ ու վույ, ինչ պաղատագին աղօթքի ու մաղթանքի, խնդիրք ու դ ի լ ա ք… Հապա ոչխարները, կարծես մարդկանցից աւելի տխրահունչ օգնութիւն էին կանչում մայելով ու բայելով և անխնայ վազում սարերն ի վար՝ խառնուելու մարդկային խուճապին։*

*Ճչալով փախչում էին ամենքը՝ լքած իրենց եզներն ու բեռները, կորուսած իրենց սիրելիները։ Փախչում էին լեղապատառ՝ առանց իմանալու թէ ինչ է խնդիրը, ով է կրակում և ում վրայ…*

*—Փախէ՛ք, փախէ՛ք…»—հնչում էր ահազանգը ետևից և հրացանների գռփ-գռփոցը արձագանգում էր նրան. ինչպէ՞ս չըփախչէին։*

*«Կարմիր-Խաչ»ի իրերը փոխադրող կառապաններն էլ, մարդկային այդ պատնէշի միջից ճամբայ էին բաց անում իրենց կառքերի համար գոռալով ու հայհոյելով… Ա՜խ, դեռ ականջիս է ռուսների կըռկըռչոցի ձայնը այն տարաբաղդ մօրը, որ սարսափահար ուզում էր իր զաւակը կառքի առջևից փախցնել… Եւ քանիներն էին ընկած այդպէս, կապտած դէմքերով, արիւնը բերաններին…*

*—Գդէ, զասպադին սալդատ,—բղաւում ենք նրանց. մեր գիտցած ռուսերէնով,—կտօ էտը։*

*Նրանք ինքնարդարացման շարժումներով հասկացնում են մեզ՝ որ կրակողները ռուսներն են՝ քրդերի վրայ, որոնց բոլորին էլ շուտով պիտի կոտորեն, և հետևաբար չարժէ վախնալ… Բայց նրանք քշում էին մ ի պ ա շ առանց մի անգամ էլ յետ նայելու…*

*«Ահա ն ա հ ա ն ջ ը, ա յ ս պ է՞ ս ե ն ն ա հ ա ն ջ ո ւ մ…»—խորհրդածում եմ ես՝ չկարողանալով խելք հասցնել այս համամարդկային արարքը բնորոշելու համար։*

*Ընդհանուր հոսանքը մեզ էլ է քշում առաջ. բայց արդեօք այն կողմը ապահո՞վ է։ Նո՞յն ձորը, նո՞յն լեռներն ու գետը։ Եւ ահա արդէն հրացանի ձայները նոյն կողմից են, մէկ, երկու, չորս…*

*Շուարած կանգնում ենք։ Արդեօք այս մի դաւադրութիւն է՞ բոլոր Վասպուրականը այս Արեան-Ձորում թաղելու համար… Այլապէս ինչու են փախչում այս հեծեալները և ո՞ւր են այս բարձրութիւնների պահակները, որոնք իբր թէ մեր անցքը պիտի պաշտպանէին…*

*Որոշ է անելիքնիս։ Մահը շատ է մօտ. ապաւինել զէնքին և վերջին փամփուշտը միայն պահել այն էլ մեզ համար։*

*Առջևի ձայները շուտով դադարում են բարեբաղդաբար.—ռուս «նահանջող» ձիաւորներն էին, որ օդի մէջ կրակելով «սարսափեցնում» էին թշնամուն ու ճամբայ հարթում իրենց համար…*

*Նորից դիմում ենք առաջ։ Պատահում ենք մի փորձուած խմբապետի և առաջարկում զինուածների գլուխն անցնելով՝ բարձրանալ այդ բլուրներից մէկը, որպէսզի կարելի լինի հակազդել ետևից յարձակուող թշնամու յառաջխաղին և միջոց ստեղծել ժողովրդի փախուստին։*

*—Հապա ընտանի՞քս, հապա երեխանե՞րս, ու՞մ թողնել նրանց այս վ ո ւ ր ա ն վ ո ւ ր ա ն ա յ ի մէջ (խուճապային դրութիւն)։*

*Ահա անկազմակերպ նահանջ—փախուստի արգասիք, որի հաւանականութիւնը դամոկլեան սրի պէս մեր գլխաւերև կախուած էինք տեսնում մենք Վանում։*

*Մօտ մէկ ու կէս ժամ տևող հրացանաձգութիւնը դադարեց վերջապէս. այնուամենայնիւ խուճապը դեռ շարունակւում է։*

*Կռուից վերադարձողները բաց են անում մեզ գաղտնիքը։ Այդ՝ քրդերի, 20—30 հոգու, մի յարձակում էր եղել այդ կածրջի գլխին՝ անշուշտ թալանի մտքով, բայց յարձակման ենթակայ զինուածների յանդուգն դիմադրութիւնը փախուստի էր մատնել քրդերին։ Ցանկարծական ու անսպասելի այդ յարձակումից շըփոթուած շատ կանայք իրենց երեխաների հետ գետն են ձգուել, ենթադրելով թէ յարձակուողը թուրք բանակն է՝ որ պիտի գայ իր վրէժին ու կրքին յագուրդ տալու…*

*«Նահանջ»ի ամենասարսուռոտ դրուագն է Արեան-Ձորի այս արիւնոտ տեսարանը, որի ականատեսները փշաքաղւում են ամեն անգամ՝ երբ այդ դէպքը վերյիշելու կարիքի առաջեն են գտնւում։*

*Ո՞րտեղից, սակայն, այսքան ռիսկ քրդերի քով. ինչպէ՞ս սիրտ արին այսքան զինուած բազմութեան վրայ յարձակուելու՝ երբ դեռ հազիւ ռուսական թնդանօթակառքերի ձայնը կտրած էր ձորից…*

*Դիմացի բլուրներից նո՛ր են իջնում ռուս զօրքերը՝ օգնութեան հասնելու աղէտեալներին…*

*Հայերն էլ, զինուած ու անզէն, մեծ մասը գիւղացի, դէ պ ի յ ե տ ե ն վ ա զ ո ւ մ։*

*—Ո՞ւր։*

*—Կերթանք մեր կորիները (կորուստներ) գտնելու։*

*Հրաշալի միտք. ո՛չ ոք չի կասկածում նրանց ազնիւ զգացումների մասին։ Բայց շուտով կեղծիքը բացւում է՝ երբ եզներըն ու սայլերը հետզհետէ հասնում են ճռնչաբարձ՝ շատերի վրայ քաղաքացոց ն ա զ ի ք, ա պ ր շ ո ւ մ է կապոցներն ու վերմակները։ Նոյնը նաև գիւղացոց ուժեղ չալակներին։ Ահա թէ ինչու էին վազում նրանք դէպի յետ. քրդերի երազած թալանը հայերի ձեռքին էր մնացել…*

*Բարքե՛ր, բարքե՛ր, որոնք ս ի ն ե մ ա յ ի պատկերների նման արագ իրար են յաջորդում այս օրերին…*

*Գնում են մոլորուած, հազար ու մի մտքերի անձնատուր։ Ֆիզիքական սպառումից յետոյ տեսածներիս ու լսածներիս խոր ազդեցութիւնը ալեկոծում են հոգիս։*

*Կորած ենք այսօր ամենքս իրար վրայ. անյայտ է ողջն ու կենդանին։*

*Բաղիգաղի կայանում, Բէնդի-մահու ափին, նաւաբեկեալ նաւաստիների նման թափուած ենք գետնին և մեր վնասներն ենք հաշւում… Մինչ յուլիս 22-ի սև գիշերը գալիս է սև քող քաշելու Արեան-Ձորի դարհուրելի աղէտի վրայ…*

*Թռչնիկ*

պլեկ և դանգ ($^1/_4$ պլեկ). պահանջուելիք տուրքը բաշխւում էր պլեկի համեմատութեամբ գումարելով դանգերը, կէս պլեկները և պլեկները։

Բացի բնակարաններէ, որ մի կերպ անձեռնմխելի էր, հողային սեպհականութեան իրաւունքը խախուտ էր և մշակելի հողը կարող էր ձեռքէ ձեռք անցնել. որովհետև *Թ ա պ ո ւ ի* դրութիւնը չկար այդ ժամանակները։

Ս. Մովսէսեան

# Մատենախօսութիւն

Ա. Վ. Ամֆիթէատրով. Հայաստան և Հռոմ. Պետրոգրադ. 1916 Թ. (А. В. Амфитеатровъ, Арменія и Римъ. Петроградъ).

Ներկայումս Իտալիայում բնակուող յայտնի ռուս հրապարակախօս-բանասէր պ. Ամֆիթէատրովը լոյս ընծայեց այս յոյժ ուշագրաւ գիրքը՝ բաղկացած 361 էջից. իւրաքանչիւր էջի լայնութիւնն ու երկայնութիւնը հաւասար է 12×19 սանտիմետր և էջը բովանդակում է 34 տող. Թուղթը ազնիւ է և գիրքը կարդացւում է խորին յափշտակութեամբ և անյագ հետաքրքրութեամբ։ Այդ մի լուրջ ուսումնասիրութիւն է Հայաստանի քաղաքական պատմութեան առաջին դարի նախքան Քրիստոս և մասամբ Քրիստոսից յետոյ։ Հեղինակը յենւում է յոյն, լատին և հայոց հին հեղինակների վկայութեանց վրայ մի կողմից և նորագոյն՝ անգլիական, գերմանական, իտալական, ֆրանսական և հայկական հետազօտութեանց վրայ – միւսից։ Սակայն ռուս հեղինակի ակնարկած աղբիւրների հաղորդածները հալած ոսկու տեղ չի ընդունում և յաճախակի քննութեան բովից է անցկացնում, վիճելով նրանց դէմ, որով եւ առաւել բարձրանում է նորա երկի արժէքը։ Թէև Գարագաշեանի Քննական Հայոց պատմութեանը Ամֆիթէատրովը ծանօթ չէ, սակայն վերջինիս յայտնի են առաջինի աղբիւրները, ուստի գործը չէ տուժում այդ կողմից։ Մեծին Տիգրանի, որին նա անուանում է Հայոց Նապոլէօն, և նորա յաջորդների քաղաքականութիւնը այնքան յաջող է լուսաբանուած, որ հազիւ թէ բուն հայ գիտնականը կարողանայ մի բան աւելացնել կամ սրբագրել հեղինակի գրածից։ Եւ եթէ գերմանացի Գուտշմիդը, առանց տեղեակ լինելու Հայոց լեզուին, կարող է քննութեան ենթարկել Մ. Խորենացու Հայոց Պատմութիւնը, Էր վասն Ամֆիթէատրովը, նոյն գրութեան մէջ, այն է՝ առանց հայերէն իմանալու, չէ կարող պայծառ լոյս սփռել Տիգրան Մեծի ժամանակի վրայ, որի սխրագործութիւնները Մ. Խորենացին վերագրում է Տիգրան Առաջինին։ Ռուս հեղինակը, յենլով նոյն մեր պատմահօր աւանդութիւնների վրայ, յետ է դարձնում Տիգրան Մեծին, նորանից կապտած փառք ու պատիւը [1]։ Փոքր ի շատէ գաղափար տալու համար գրքիս բովանդակութեան մասին, կարծում եմ, հերիք է մէջ բերեմ գլուխների ցանկը՝

1. Ասիա. Պարթևաց Թագաւորութիւն, Մովսէս Խորենացի.
2. Հայաստան. Եփրատ. Ճանապարհներ դէպի Հեռաւոր Արևելք.
3. Պոնտացւոց Թագաւորութիւն. Միհրդատ Եւպատոր։
4. Լուկուլլոս. Տիգրան.
5. Պոմպէոս.
6. Միհրդատի վախճանը.
7. Կրասոս. Խառանի ճակատամարտը։
8. Անտոնիոս։
9. Հանրապետութեան և պրինցիպատի եզերքում։
10. Կանանց Թագաւորութիւն Փոքր Ասիայում։

Բոլոր յիշեալ գլուխները մեծ խնամքով մշակուած են և լուսաբանուած ըստ իս։ Ռուս հեղինակը մեծ նշանակութիւն է տալիս Պարթևաց Թագաւորութեան։ Միհրդատ Առաջնի օրերից Արևելքը, ասում է նա, նորից մտնում է քաղաքական շարժման շրջանը։ Տիեզերքը ունեցաւ երկու տիրապետող՝ Հռոմը և Պարթևաստանը, ի տրիտուր որի տիեզերական պատմութիւնը մոռացաւ, թէ ինչ ազգ էին Պարթևացիք, կորցրեց հին հեղինակների գրուածքները, որոնք զբաղւում էին նրանց տարեգրութեամբ. անհետացան Ապոլլոդոր Արտեմիդացին, Պոսիդոնիոս Ապամէացին, Տրոգ Պոմպէոսը, Դելլիոսը, Ստրաբոնը, Ապպիանոսը, Արրիանոսը... ժամանակակից հետազօտիչը տհաճութեամբ և տրտմութեամբ է կարդում Ստրաբոնի հետևեալ տողերը. «Որովհետև ես մանրամասնօրէն եմ խօսել Պարթևական հաստատութիւնների մասին «Ուշագրութեան արժանի պատմական իրերի վեցերորդ գրքում», որպէս և երկրորդ գրքում «Պատմութեան զկնի Պոլիբիոսի», արդ կրկնութիւնից խուսափելու համար, այս բոլորը լռութեամբ ենք անցնում»։

Այդ կորուստը ողբալի է նաև, կը նկատենք մեր կողմից, Հայոց պատմութեան տեսակէտից, քանի որ մեր հին հեղինակները հանդէս եկան Vդ դարում, Հայոց նշանագրերի գիւտից յետոյ և բնական է, որ նոքա չէին կարող շատ բան հաղորդել մեր նախնեաց մասին նախքան Քս. և պիտի շատանային օտար պատմողների հաղորդած կցկտուր, միտումնաւոր և միակողմանի տեղեկութիւններով։

Փոքր ի շատէ ճշմարիտ աղբիւրները Պարթևաց պատմութեան համար մեծ քանակութեամբ պահպանուած դրամներն են։ Աւելի վաղ ժամանակի համար Հայոց հեղինակների գրուածքներում, ասում է պ. Ամֆիթէատրովը, մենք ունենք միայն ուրոյն հատուածներ ու աւանդութիւններ—Ագաթանգեղոսի, Փաւստոս Բիւզանդի, Ղազար Փարպեցու և Մ. Խորենացու։ Զորան էլ—քահանայ կամ վարդապետ էին բարձր եկեղեցական պաշտօններում. ուստի նրանց ուշադրութիւնը կենտրոնացած էր երկրի քրիստոնէական պատմութեան վրայ՝ սկսեալ կիսաւանդական Սանատրուկից։ Առաջին երեքը—Ագաթանգեղոս, Փաւստոս և Փարպեցին նախաքրիստոնէական շրջանի համար կարող են պակաս օգտաբեր լինել, թերևս յետահայեաց մեկնաբանութեան համար պէտք են։ Փաւստոսի պատմութիւնը կրում է իւր վրայ Պարսկական վէպի պարզ դրոշմը։ Անհաւասարակ Հայոց պատմիչները աւելի գնահատելի են Պարսից նիստ ու կացի, կրօնական ծիսակատարութեանց և ֆոլկլորի, քան թէ բուն Հայաստանի համար։ Այդ կախուած է, ի հարկէ, նրանց երկերի վիճաբանական նպատակից ընդդէմ հեթանոսութեան և ջատագովականից—յօգուտ քրիստոնէութեան»։ Այնուհետև նա խօսում է Եղնիկի, Խորենացու մասին, որի պատմութեան ա. գիրքը յօրինուած է ազգային աւանդութիւններից։ Վերջիններս կարելի է գտնել նաև օտարազգի հին հեղինակների մօտ, օր. Պլուտարքոսի, Քսենոփոնի գրքերում. վերջապէս Դիոդոր Սիկիլիացին նոյնպէս ճանաչում է հայ թագաւոր Բարզանին, որ գերի է ընկնում Ասորեստանեայց ձեռքը. այս բոլորը վէպ ու առասպելներ են, որոնք ծագել են այն պատմական սահմաններում, երբ Եփրատի վերին հոսանքի վրայ Ուրարտացիներին փոխարինեցին Հայերը (Է. դարում Քրիստոսից առաջ)։ Դարձեալ՝ խօսում է Հայոց դիցաբանութեան մասին, յիշելով աստուածներին, որոնցից Անահիտի արձանը, ըստ վկայութեան Ստրաբոնի, Պլինիոսի և այլոց զուտ ոսկուց էր ձուլուած։ Հակիրճ կերպով աւանդում է Ուրարտացւոց դարաւոր պատերազմները Ասորեստանի անհեղ Թագաւորների դէմ. Հայերի պատմութեան ասպարէզ գալն Է. դարում. Նրանց մասնակցութիւնը Պարսից Թագաւոր Կիւրոսի, Դարեհի և այլոց արշաւանքներում, Հայաստանի դրութիւնը Ալ. Մակեդոնացու յաջորդների ժամանակ, Արարատեան Թագաւորութեան հաստատութիւնը և վերջապէս Արտաշէսեան հարստութիւնը, որ պատմութեան մէջ կոչւում է Տիգրանեան հարստութիւն (Тиграниды), սկսեալ Մեծին Տիգրանից։ Վերջինիս լայնածաւալ պետութիւնը

[1] Այս ճիշտ դիտողութիւնը առաջին անգամ արել է բիւզանդագէտ Գելցերը, որ յետոյ Մ. Աբեղեան նորանոր ապացոյցներով աւելի հիմնաւորել է։
Ծանօթ. Խմբագր.

Կասպից ծովի արեւմտեան ափերից դէպի հարաւ և արեւմուտք Փոքր Ասիա, Կիլիկիա, Ասորիք, Փիւնիկէ և Միջագետք։ Տիգրանի դաշնակցութիւնը Պոնտացւոց Միհրդատի հետ, ընդհարումները Հռովմի հետ, Տիգրանի յաջորդների ազգային քաղաքականութիւնը, յարաբերութիւնը Պարթեւաց հետ, որոնք հզօր մրցակիցներն էին Հռովմայեցւոց աշխարհիս տիրապետութեան գործում և շատ անգամ պարտութեան էին մատնում Հռովմայեցւոց, ինչպէս վկայում են դասական հեղինակները։

Այստեղ, առհասարակ, շատ մեղադրում է Մ. Խորենացուն, որ, յանձին Մար Աբաս Կատինայի, ոչինչ տեղեկութիւն չունի Ուրարտացւոց մասին։ Նորա միտքը պտտւում է Ասորեստանի—Բաբելոնի աստուածների ծագման աւանդութեան ու հայկական առասպելների շուրջը, ուստի Խորենացին այդ երկիրը (Ուրարտու) հպատակեցնում Ասորեստանեայց, մինչդեռ այդ մի մեծ պետութիւն էր և մրցում էր Ասորեստանի հետ. մի իրողութիւն, որ Հայոց մեծ ազգասէրը գուշակել անգամ չէր կարող, անգիտակ լինելով վերծանել բեւեռագիր արձանագրութիւնները. ինչ անհուն ուրախութիւն կը լինէր նորա համար այս հանգամանքը։ Միով բանիւ Խորենացին ոչինչ գաղափար չունի հնագոյն Հայաստանի և հարեւան ազգերի յարաբերութեան մասին և չնայելով իւր լայն ազգասիրութեան, նա իւր հայրենիքի պատմական անցեալը աւելի յոռի էր երեւակայում, քան որ նկարագրում են օտարազգի հեղինակները։ Օրինակի համար, սկսեալ քրիստոնէական Թուականից նա համարում է Հայաստանը Հռովմայեցւոց հարկատու (tributum), որ, իրօք, երբէք տեղի չէ ունեցել։ Խրստիւ յանդիմանելով նախնեաց անիմաստասէր բարքը, ինքը Խորենացին ամենեւին հոգ չէ տանում պատմական ստուգութեան մասին և, կարծես, դիտմամբ աշխատում է իւր գրոյցները երեւակայական վէպ դարձնել, խճճելով այն վիպասանական աւանդութիւններով, հնարովի յերիւրանքներով ու չեղած աղբիւրներով [1]։ Սակայն յետակայ սերունդը շատ շնորհակալ է Խորենացուն ոչ նորա գեղեցիկ խաբէութեան համար, այլ այն հիանալի հատուածների համար, որ նա պահպանել է անհետացած ժողովրդական վէպերից. ափսոս միայն, որ քիչ են։ Մի ուրիշ տեղ Աբգարին հայացնելով՝ Խորենացին արջի ծառայութիւն է մատուցանում Հայոց, չէ ճանաչում Արտաշէսեան հայկական հարստութիւնը և այդու զրկում է Հայոց իւրեանց յատուկ ոյժերով Սելեւկեանց լծից ազատուելու պատուից. նա մի շարք բնիկ հայ թագաւորներին Պարթեւացի է դարձնում Վաղարշակից սկսելով. մինչդեռ Արշակունիք հաստատուեցան Հայաստանում առաջին դարում Քրիստոսի։ Սակայն այսքանս բաւական է. սպառել գրքիս ամբողջ նիւթերը մեզ թոյլ չէ տալիս լրագրական յօդուածի ծաւալը. ուստի խորհուրդ կըտանք ընթերցող հասարակութեան լուրջ ուշադրութեամբ կարդալ այս գիրքը, մանաւանդ մեր այն ազգայիններին, որոնք գրականութեան դասեր են առնում Վալերիյ Բրիւսովից. ամօթ չի լինի Ամֆիթէատրովից էլ պատմութեան դասեր առնել։

10 օգոստոսի 1916. Մ. Շովրեան

Մոսկուա.

[1]) Այս և յաջորդ մեղադրականը եթէ Ամֆիթէատրովինն են, տարօրինակ չէ, իսկ եթէ մեր յարգելի աշխատակից պ. Շովրեանինն են, շատ զարմանալի։ Մ. Խորենացին ոչ հնարովի հեռեանքներ, ոչ չեղած աղբիւրներ ունի, ուրեմն և „խաբեբայ" էլ չէ։ Արդարեւ նա իւր ունեցած գլխաւորապէս վիպական, այլ և պատմական աղբիւրներն օգտագործել է ըստ իւր ըմբռնման և ըստ իւր միտումների, բայց այդ իրաւունք չի տալիս մեզ նորան „խաբեբայ" կոչելու։ Ժամանակ է որ վերջապէս մենք մեր ժամանակով չը դատէինք մեր նախորդներին. որտեղ մեզ պատմական ճիշտ պարագաներ, ապացոյցներ և իրողութիւններ պակասում են, ասենք non liquet։ Անշուշտ Խորենացին շատ անգամ սխալուել է իւր ձեռքի տակ եղած պատմական ապացոյցների պակասութեան և հակասութեանց պատճառով, որի համար նա դառնապէս գանգատում է իւր մեկենասին, ուստի և ստիպուած է լինում դիմել բազմաթիւ պրպտումներով, ինչպէս Տրդատի թագաւորութեան տարին որոշելու են։ Նրա պատմագրութեան ըմբռնումը նորան միայն պատիւ կարող է բերել. իսկ միտումնաւորութիւն (тенденція) միթէ չունին և Ժթ. ու Ի. դարու պատմագիրները. իսկ սխալները մեզ ոչ մի իրաւունք չեն տալիս նորան խաբեբայ կոչելու։ Հետաքրքրական է իմանալու, եթէ այժմեան քննադատ—պատմագէտները իրենց առաջ ունենային Զօջանց տուն կամ Սասմայ ծռեր և Թաջանց տուն Արշակունեաց վէպերը իրենց բազմաթիւ փոփոխակներովը (варіанты), աւելի ճիշտ Հայոց պատմութիւն կը գրէին, քան Խորենացին իւր ժամանակին։ Մենք շատ տարակուսում ենք։

Ծան. Խմբ.

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ